# «ԵՄ՝ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՍ...»

ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍԱՐԱՖՅԱՆԻ

Հասարակ պատմություն է։ Դուք նույնիսկ կարող եք ասել, թե հետաքրքիր չէ, բայց չգիտեմ ինչու, այս պատմությունը թանկ է ինձ համար։

Հոկտեմբերիկ էի։ Դա առաջին հերթին նշանակում էր, թե պիոներ չէի, իրավունք չունեի վզկապ կապելու, պիոներական համազգեստ հագնելու և ձեռքս գլխից վերև պարզելով պատասխանելու բոլորի հետ.



— Մի՛շտ պատրաստ։

Պիոներ էր Պողոսը, պիոներ էր Համոն, պիոներ էր քույրս՝ Զարիկը, իսկ ես հոկտեմբերիկ էի, այն էլ մեր դասարանի ամենից կարճահասակը։

Ընկեր Լուսիկը մեր հոկվարն էր, ընկեր Արշոն՝ պիոներների կոմվարը։ Երբ շարք էինք կանգնում, ընկեր Արշոն ընկեր Լուսիկին ասում էր.

— Փոքրիկներից առաջ բեր։

Ասում էր բարեկամաբար, բայց ես այնպես էի վիրավորվում, որ քիչ էր մնում լաց լինեմ։

Ես արդեն գիտեի պիոներական երդումը, գիտեի կարմիր վզկապի նշանակությունը, գիտեի, թե ինչու է վզկապը կարմիր, թեև, ճիշտն ասած, լավ չէի հասկանում մի գրքում կարդացածս. «Պիոների վզկապը կարմիր է, որովհետև մեր խորհրդային դրոշի մի մասն է, իսկ մեր դրոշը ներկված է բանվոր դասակարգի արյունով»։ Այո, ես բոլորը գիտեի, բացի նրանից, թե ինչու են դրոշակն արյունով ներկել։ Իմ քույր Զարիկն էլ չգիտեր, բայց պիոներ էր, այն էլ՝ օղակավար...

Գնացի ուղղակի ընկեր Արշոյի մոտ.

— Պիոներ գրեք։

Ծիծաղեց.

— Պստիկ ես։

— Պստիկ չեմ, բոլորը գիտեմ. «Եմ՝ պատանի պիոներս...»

— Կա՛ց, կա՛ց,—կտրեց ընկեր Արշոն,— դա չի կարևորը, պիոների կոչմանը պետք է արժանի լինել։

— Արժանի կլինեմ,—ասացի։

— Երբ որ կլինես, մենք էլ կընդունենք։

Չհասկացա, թե ինչպես պետք է արժանի լինեմ։ Հարցրի Զարիկին. նա խոսեց ինչ-որ Գավրոշի մասին, հետո բարիկադների.

«Բարիկադներում, որ անմահների արյունով էր ներկված...» Դա ոտանավոր էր փոքրիկ կոմունարի մասին։

Շատ լավ, փոքրիկ կոմունարը կռվել էր բուրժույների դեմ ու արժանի էր եղել, բա ես ինչ անեի, որ այլևս կռիվ չկար։ Հետո Պողոսը, Համոն, Զարիկը, էլ ինչպես է, արժանի են եղել առանց բարիկադի։ Նույնիսկ ծիծաղս եկավ, ախր Զարիկն ինչ հերոս, նա իսկի մենակ մեր մառանը չէր մտնում, քանի որ մկներից վախենում էր։

Ուրեմն անհույս բան էր, մեկ է, հերոսանալ չէի կարող, դրա համար տեղ չկար։ Ճիշտ է, ընկեր Լուսիկը բացատրեց, որ լավ սովորելն ու կարգապահ լինելը նույնպես հերոսություն է, և ով լավ սովորի ու լինի կարգապահ, մի երկու տարի հետո կարող է պիոներ դառնալ։ Բայց դա նախ այնքան էլ համոզիչ չէր, հետո սովորական ու երկար էր այդ ճանապարհը։

Պատահականության բերմամբ իմ ճանապարհն այդքան երկար չեղավ։

* * *

Պիոներական ակումբը զբաղեցնում էր առանձին մի հին բարաք։ Այդտեղ բեմահարթակ կար, բեմում պիոներները հեղափոխական պիեսներ էին բեմադրում կամ կենդանի լրագիր։ Բեմը վարագույր ուներ, դրա վրա նկարված էր շղթայակապ երկրագունդը, կողքին մի բանվոր հսկայական մուրճով կտրատում էր երկրագնդի շղթաները։ Ամեն օր կտրատում էր, ու մեզ թվում էր, թե կամաց-կամաց երկրագնդի շղթաները քանդվում էին։ Ակումբում փողային նվագախմբի գործիքներն էին պահվում՝ փող, բաս, ծնծղան...

Բայց ակումբի պարծանքը պիոներական բազա-

յի (այն ժամանակ այդպես էին կոչում գրամեքենան) կարմիր դրոշն էր՝ դրված բեմի խորքում, ծաղկի երկու թաղարների արանքում: Դրոշի վրա փոքրիկ, երեք տարեկան Լենինի նկարն էր, ոսկե շրջանակի մեջ: Վերևում արծաթե տառերով գրված էր. «Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք»: Ներքևում նույնպես արծաթե տառերով. «Լենինի գործի պայքարին եղիր պատրա՛ստ», նաև՝ մեր բազայի անունը:

Բայց մենք, փոքրերս ակումբում քիչ էինք լինում: Այնտեղ անընդհատ փորձեր ու պարապմունքներ էին լինում, այդ պատճառով դռների առաջ միշտ նիզակները ձեռքին պահակներ էին կանգնում և մեզ քշում հետ, որ չխանգարենք:

* * *

Հրդեհն սկսվեց կեսօրին, երբ բոլորս դասի էինք նստած: Ասենք, ոչ բոլորը: Տարիներ են անցել, հիմա կարելի է խոստովանել. ընկեր Ամալյանն ինձ դասից դուրս էր արել, որովհետև ես նավակի մասերից բաշում էի դասի ժամանակ: Դրա համար էլ առաջինը ես տեսա բոցը, որ ծխի հետ դուրս էր գալիս ակումբի պատուհաններից:

— Հրդե՜հ, — գոռացի ու երկրորդ հարկի պատշգամբից արագ իջա փայտե աստիճաններով:

Ակումբն արդեն այրվում էր բոլոր կողմերից: Դուռը բաց էր: Ես նայեցի ներս: Բոցը լիզում էր բարաքի տախտակե պատերը, առաստաղը ճարճատում էր, առաստաղից վառված փայտի մանրիկ կտորներ էին թափվում: Բեմի վարագույրը մի կողմ էր քաշված, վարագույրի ծայրերը դողում էին հրդեհի առաջացրած տաք հոսանքից, իսկ բեմի խորքում, ծաղիկների երկու թաղարների արանքում էր բազայի դրոշը...

Իմ հետևում դղրդում էին երկրորդ հարկի փայտե աստիճանները, ես գիտեի՝ աշակերտներն ու ուսուցիչներն էին վազում դեպի ակումբ:

Իմ կարծիքով արածիս մեջ հերոսություն չկար: Ես տեսա դրոշը, Լենինի նկարը ոսկեզօծ շրջանակի մեջ, տեսա դեպի դրոշը տանող այրվող ճանապարհը ու ներս վազեցի: Առաստաղից կայծեր էին թափվում, անտանելի շոգ էր, ես վազում էի վառվող նստարանների արանքով:

Հետևից ճիչ լսեցի. ընկեր Ամալյանն էր, որ բարկացած ասաց.

— Արամ, ե՛տ դարձիր, շու՛տ:

Բայց ես արդեն բեմի վրա էի, արագ մոտեցա դրոշին, ճանապարհին վար գցեցի ծաղկի թաղարներից մեկը, ինքս էլ վար ընկա, վեր թռա ու դրոշը հափշտակեցի...

Եթե ես ամեն ինչ ճիշտ այնպես չգրեի, ինչպես եղել է, հիմա կասեի, թե հագուստս բոցավառվեց, թե առաստաղից ընկած վառվող փայտը այրեց թիկունքս ու թե, իբր, ես ամենևին չէի վախենում: Սովորաբար այդպես են գրում գրքերում: Ո՛չ, վախենում էի, բայց միանգամայն անվնաս հասա ակումբի դուռը, այնտեղ ոտքս խփեցի շեմքին, փռվեցի գետնին ու ...լաց եղա:

Լեղաճաք էի եղել, իսկ բոլորն ասում էին, թե ես քաջ եմ, հերոս եմ իբր թե...

* * *

Մեր վարագույրն այրվեց, հետո էլ՝ բանվորն ու երկրագունդը, թմբուկն այրվեց, փայտյա զորքերը ծամածռվեցին, ավազան մի խոսքով, ակումբն ամբողջովին այրվեց. երբ հրշեջները մեզ հասան, ակումբից մի հսկայական խարույկ էր մնացել: Միայն դրոշը տարան ուսուցչանոց ու դրեցին պատի մոտ՝ ծաղկի երկու ուրիշ թաղարների արանքում:

Շատ չանցավ, մեր դպրոցի պիոներական բազային նոր ակումբ հանձնեցին:

Ութ տարիս լրացավ, մտա իննի մեջ, դեռ առնվազն երեք տարի էլ հարկավոր էր պիոներ դառնալու համար:

...Հիմա նա անց է արդեն: Ես շատ բան եմ տեսել, և՛ ցավ, և՛ ուրախություն, բայց այդ երեկոն ես երբեք չեմ մոռանա: Ձմեռ էր: Հետս շարվածները հինգերորդ դասարանի աշակերտներ էին, միայն ես էի երկրորդ դասարանից: Ընկեր Արշոն մեր գլխին պարզել էր պիոներական դրոշը, ու ես մյուսների հետ կրկնում էի պիոներական երդման բառերը.

«Ես՝ պատանի պիոներս...»

Ես դասարանում միակ տղան էի, որ ութ տարեկան պիոներ էր արդեն:

Հիմա ոչ ոք չի հավատում, դուք էլ երևի...



50 ՏԱՐԻ







ԵՂԻՇԵ ՉԱՐԵՆՑ

# ԼԵՆԻՆ ՔԵՌԻՆ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

(Կրճատ)

1

Հայրը զենքով եկավ գործարանից այդ օրը:
Դեմքը խիստ էր, անգամ մի քիչ մռայլ.
Երբ մոտեցավ, ուզեց գրկի Նորը՝
Կամաց մի կողմ հրեց հայրը նրան:

Անխոս, նստեց թեյի: Միտքը դուրսն էր,
հեռուն էր:

Աչքը երկա՜ր-երկա՜ր հառել էր մի բանի:
Դեմքին դեռ մնացել էր գործարանի մուրը:
Այդ երեկո խոժոռ էր հայրն Իվանի:

«Գնում ենք, մորն ասաց, մենք լեհերի վրա.
Հանել է լեհերին մեր դեմ էլի Անտանտը:
Բայց հույս ունենք, կնի՛կ, որ կջարդենք նրանց,
Կշպրտենք--անթիվ տանկերո՛վ էլ գան թե:

«Դենիկինն էր երեկ, հետո Կոլչակն եկավ.
Ու լեհերն են հիմի... Ոչի՛նչ, կնիկ:—
Կարմիր բանակը մեր բանվորական
Սովորել է քշել նրանց բնից...»

Այսպես երկար խոսեց հայրը մինչև գիշեր.
Խոսեց կռվի մասին՝ բուրժույի դեմ:
Անցած հազար-հազար դեպքեր հիշեց.
Հիշեց հուլիս ինչ-որ ու հոկտեմբեր:

Եվ նա տեսավ, տեսավ, թե ինչպես հոր
Աչքերը հուր դարձան հետզհետե.
Լուսարձակներ երկու դարձան ոնց որ,
Ոնց որ ռումբեր, որ նա պիտի էգուց նետե:

Ու վառելով այդպես իր բորբոքուն հայացքը՝
Հայրը թռավ հանկարծ, ելավ ոտքի:
Եվ Իվանին թվաց թե
Այրող գնդակ անցավ իր հոր մտքից:

Ոտքի թռավ այդպես ու սրբելով քրտինքը՝
Հայրը ասավ.—«Արդյոք հասկանու՞մ ես, կնիկ,—
Մեր գործերին էգուց խոսելու է ի՛նքը.
Ինքը Լենի՛նը մեզ պիտի ճամփա դնի...»

Հայրը այսպես ասաց ու գնաց քնեց,
Որ առավոտ ծեգին գնա բանին:—
Բայց խոսքերը նրա վերջին էն
Վառվեցին սրտում Իվանի...

2

Պատմել է հայրը նրան,
Որ Լենին քեռին
Խելացի է, մեծ է ու քաջ:
Այնքա՜ն, այնքա՜ն, այնքա՜ն,
Որ աշխարհում ուրիշը—այդպիսին չկա:

Պատվիրել է, որ ինքն էլ երբ մեծանա՝
Երթա նրա— այդ մեծ Լենին-քեռու ճամփով,
Որի վրա թեկուզ հազար փուշ կա ցանած,
Բայց գնում են որով գյուղացի, բանվոր...

Բա՞ս.
Այսպիսին է Լենին-քեռին:
Եվ վաղը նա ի՛նքը պիտի խոսի:
Պիտի անցնի իր հայրը՝ զենքը ձեռին—
Եվ Լենինին լսի...

Այդ հո նման է—զարմանք բանի՞...

Եվ որոշում է Իվանը,
Ինչ էլ լինի՝
Վաղն առավոտ կանուխ պիտի փողոց գնա
Եվ տեսնի—ընկեր Լենինին:

3

Արդեն գնացել էր հայրը, երբ արթնացավ:
Շտապ հագավ շորերը և թռավ փողոց:
Վազ, վազ, վազ անցավ իրենց փողոցը
Եվ ընկավ Կարմիր հրապարակը՝ բանվորներով ողող:

Ծփում էր Կարմիր հրապարակը,
Ինչպես մարդկային մի անտառ:
Հավաքվել էր կարծես
Աշխարհքը բովանդակ:
Ողջը բանվոր մարդիկ,
Հոր պես հագած:

Դրոշակներ անթիվ,
Անթիվ պլակատ:
Հրմշտկելով մարդկանց ու բոթելով՝
Փորձեց առաջ երթալ, հորը կոչել.
Փորձեց ելնել կողքի մի բանվորի վրով՝

Բայց բանվորը—պապի ձեռնափայտը հո չէ՞ր:
Այդպես սեղմած—մնաց:
Փորձեց էլի:
Պատահեց մի մարդ հայհոյող:
Նորից մնաց՝ հոգին մորմոքով լի:
Բայց ի՜նչ տեսներ—իր այն մի թիզ բոյով...

Հանկարծ մի ծով ամբոխ
Ոնց որ գոռա—
Դղրդաց հրապարակը.
Գոռաց ուռա:
Հետո լռեց ամբոխը.
Բանվոր մի կին
Իր կողքի ընկերոջը
Շշնջաց՝
«Լենի՛նը...»
Փսփսաց նա էլ կողքինին:
Ու շրթից շուրթ անցավ՝
«Լենի՛ն. Լենի՛ն...»

Հասկացավ Իվանը.
Այնտե՛ղ է նա...
Շփոթված՝ գլխարկը հանեց—
Եվ սեղմեց ատամները՝ բարկությունից դեղնած:
Էլ ճար չկար: Տեսավ՝ տեղ չեն տա իրեն:
Եվ որոշեց՝ անի, ինչ էլ լինի:—
Ոտքը խոթեց հանկարծ գրպանը կողքինի—
Եվ բարձրացավ վրեն...
Թռավ ուսին նստեց
Մի բանվորի.
Բայց բանվորը ներքև շպրտել
Զփորձեց էլ նրան նորից:

Պտույտ եկավ գլուխը, սիրտը ամուր թակեց:
Կարծես աշխարքը ողջ նվիրեցին նրան:
Նայեց... Լենին-քեռին կանգնած էր տախտակե
Ամբիոնի վրա...

Որ այդ Լենին-քեռին պիտի սիրեր իրան,
Եթե տեսներ «բուրժույ», «զորք» խաղալիս:
Ու մտածեց՝ էգուց երթա տեսնի նրան.
Ասի՝ ինձ էլ ղրկի, գնամ բանակ.
Ասի՝ ուզում եմ ես կարմիր շոֆեր դառնամ—
Լենին-քեռուն բոլոր իր մտքերը բանա...

Այսպես՝ աչքերը չիռ Լենին-քեռուն հառած՝
Երազում էր Իվանը:
Հանկարծ լռեց Լենինը:
Ու դղրդաց նորից բանվորական ուռան.
Ձեռքը մեկնեց առաջ—ու բղավեց ինքն էլ:
Զորքը ծփաց հետո ու շարժվեց առաջ:
Ու դրոշի վրա դիմացի նա
Տառ-տառ կարդաց վաղուց իմացած իր բառը.
«ԵՐՐՈՐԴ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ»:

Դրոշակներ նորից: Այդ ինչքա՜ն են...
Եվ կապելով իրար տառերն հազիվ՝
Կարդաց նորից Իվանը՝
«ԿՈՐՉԻ ԲՈՒՐԺՈՒԱԶԻՆ»:

Երգում էր զորքը «Ինտերնացիոնալը»:



Ձեռքը առաջ մեկնած, գլուխը բաց,
Ինչպես տնում կախած այն նկարի խորքից—
Իր հայրիկի ձայնով. մի փոքր բարձր՝
Նա պատգամ էր առում բանվորական զորքին...

Եվ Իվանին հանկարծ այնպես թվաց.
Թե տեսել է ինքը նրան վաղուց.

Ինքն էլ գիտեր երգել: Երգեց: Նայեց հեռուն.
Զինվորների նման, գլուխը բաց՝
Երգում էր երգը նույն—Լենին-քեռին...

Ու խանդոտ մի բոց աչքերին՝
Նայեց նորից Իվանը...Տեսավ՝ հրե՛ն

Հայրը քայլում է՝ մեծ մի հրացան ձեռին—
Ու նայում է, նայում Լենին-քեռուն...

Ուզեց կանչի նրան,
Բայց այդ պահին հանկարծ
Մի ահռելի ուռա
Կրկին ղնգաց:
Գոռում էր զորքը ողջ.
Ինչքան որ ձայն ուներ.
Ախ, ունենա՜ր ինքն է՛լ
Մի բարձր ձայն գոնե...

Թնդում էր օդը
Նրանց ձայնից,
Ինչպես որոտը՝
«Լենի՛ն. Լենի՛ն»:

Ու ինքը. Լենինը. կանգնած այնտեղ...
Նման էր ողջը—երազի...
Եվ՛ որոշեց Իվանը. որ անպայմա՛ն երթա—
Իրա բոլոր մտքերը Լենին-քեռուն ասի...
Երթա ասի, որ ինքը կուզե շոֆեր դառնալ.
Կամ օդաչու. կարմիր՝ թռչել անահ...
Այդ հարազատ. այդ մեծ Լենին-քեռու առաջ
Իրա բոլո՛ր. բոլոր գաղտնիքները բանա...




# ԱՐԵՎԱՃՈՂ

Դու եղե՞լ ես Ղազախստանում: Ո՞չ: Ափսո՜ս: Իսկ գիտե՞ս, թե ինչ փիրխարի նվաճումներ է ձեռք բերել ղազախ ժողովուրդը սովետական իշխանության տարիներին: Ղազախստանի ներկան ավելի լավ պատկերացնելու համար անհրաժեշտ է մի հայացք նետել դեպի անցյալը: Ղազախական ավանդություններից մեկը պատմում է այն մասին, թե ինչպես բատիրը ճեղքում է ժայռերը և ջուր տալիս ժողովրդին: Դա եղել է ծարավից տառապող մարդու երազանքը և դարերով պապակ մնացած հողի տենչը: Արոտավայրեր գտնելու նպատակով ոչխարի հոտերը ոտքի տակ էին տալիս ամբողջ Ղազախստանը, իսկ ժողովուրդը քոչվոր խմբեր կազմած հետևում էր նրանց, չունենալով մշտական բնակավայր: Տոթակեզ արևից խանձված հողը գարուն էր երազում, որպեսզի անձրևները նորից կենդանություն տային ու բուսականությամբ զարդարեին լերկ դաշտերը:

Քառասուն տարի առաջ Ղազախստանի կենտրոնական մասի հարավ-արևմուտքում ցանում էին միայն վարսակ, ցորեն ու գարի:

Մինչև 1917 թվականը Ղազախստանը նույնիսկ չէր էլ ուսումնասիրված: Եվ միայն Հոկտեմբերյան հեղափոխությունը նոր կյանք բերեց ղազախ ժողովրդին:



Ալմա — Աթա

Այսօր Ղազախստանում հայտնաբերված են բազմաթիվ հանքանյութեր, և այն էլ՝ մեծ քանակությամբ: Ընդերքի այդ գանձերը վաղուց արդեն օգտագործվում են արդյունաբերության մեջ: Իսկ երկրաբանները շարունակում են որոնումները: Հնարավոր է, որ կարճ ժամանակից հետո հայրենի հողը մարդկանց կպարգևի Մենդելեևի աղյուսակի բոլոր տարրերը, ինչպես որ պարգևել է իր ընդերքի ջուրը: Չէ՞ որ Ղազախստանի անապատային ու կիսաանապատային վայրերում հայտնաբերված ստորերկրյա ջրերը

# Մանգիշլակի թերակղզին



*Վերջերս մեր ընթերցողներից մեկը՝ Անդրանիկ Վարդանյանը, խմբագրությանն բերեց մի քանի նամակ, որ նա ստացել է Ղազախստանում ապրող իր ընկերոջից: Անցած տարի նրանք միասին հանգստացել են «Արտեկ» միջազգային ճամբարում և այնտեղ էլ մտերմացել: Տպագրում ենք այդ նամակներից մի քանիսը:*

Սիրելի Անդրանիկ, մի քանի օր հետո իմ կյանքում տեղի կունենա մեծ իրադարձություն. մեր ընտանիքը կտեղափոխվի նոր բնակավայր՝ Շևչենկո քաղաքը: Իսկ դու գիտե՞ս, թե որտեղ է գտնվում այդ քաղաքը. Կասպից ծովի ափին, Մանգիշլակ թերակղզում:

Հայրս ասում է, որ հնում այդ թերակղզին կոչվել է Մինգղշլաղ, այսինքն՝ հազար գյուղ...

Առայժմ այսքանը: Շտապում եմ խանութ, որպեսզի գնեմ ձկնորսական կարթ, լողակներ և ջրասույզի դիմակ՝ ջրի տակ լող տալու համար:

**ՍԱԲԻԹ ԹԱՋԻԲԱԵՎ**

Ընդունիր ջերմ ողջույններ Մանգիշլակ թերակղզուց: Ճիշտ է, մենք վաղուց ենք այստեղ, բայց այնքան գործ կար, որ ժամանակ չէի գտնում նամակ գրելու: Մենք եկանք ինքնաթիռով, և ես վերևից տեսա Կասպից ծովը: Նավերը լուցկու չափ էին երևում: Մանգիշլակ թերակղզին խսկական անապատ է, ավազոտ անապատ, որ գտնվում է ուղղակի ծովափին:

Անապատի կենտրոնում փարոսների նման վեր են խոյանում նավթի աշտարակները, որոնք 14 հարկանի շենքի բարձրություն ունեն: Աշտարակների մոտ կան վրաններ ու փոքրիկ վագոններ, որտեղ ապրում են բանվորները:

Մենք, ցավոք սրտի, վրանում չենք ապրում, այլ նորակառույց շենքում:

Անդրանիկ, չես կարող պատկերացնել, թե ինչքան հետաքրքիր է այստեղ: Թերակղզում հող բոլորովին չկա. միայն ավազ է, կավ ու քար: Ասես թե բուսականությունը դիտմամբ սրբել են գետնի երեսից: Այստեղ ոչինչ չի աճում. ո՛չ ծառ կա, ո՛չ արտ, ո՛չ այգի, ո՛չ բանջարանոց: Բայց արդեն բուսել են ծառեր, թփեր և նույնիսկ ծաղիկներ տնկել: Այդ ամենը հարկավոր է ջրել, թե չէ՝ կչորանան: Վատն այն է, որ առայժմ ջուրը սակավ է: Բայց դրա փոխարեն այստեղ այնպիսի մի բան կա, որը ոչ մի ուրիշ տեղ չես տեսնի. աղազտիչ: Ծովի աղի ջուրը խողովակներով անցնում է աղազտիչի մեջ, եռալուց հետո սառեցվում և դառնում խմելու ջուր:

Երեկ մեզ մոտ եկավ հորս ընկերը, որը նույնպես երկրաբան է: Նա վաղուց է ապրում Մանգիշլակում: Քեռի Նիկոլայն ասաց, որ նախքան նավթ գտնելը տասը տարի շարունակ այս անապատում իրենք փորփրել են գետինը: Երկրաբանները համոզված

# ԵՐԿԻՐ

*անգամ ավելի շատ են, քան Ազովի ծովի ջուրը: Եվ պատահական չէ, որ մեր մեծ հայրենիքի արոտավայրերի գրեթե կեսը բաժին է ընկնում Ղազախստանին: Իսկ եթե գետնի տակից դուրս բերվեն բոլոր այդ 23 ծովերը, ինչպիսի՜ նորանոր բարիքներ կտա ղազախական հողը:*

*Այսօր էլ ամենուրեք կանաչին են տալիս դաշտապաշտպան անտառաշերտերը, որոնք միակ պատնեշն են հանդիսանում կործանարար մրրիկների առաջ: Եվ աշխարհի ամենականաչապատ քաղաքը համարվող Ալմա-Աթային սարսափելի չեն արդեն անապատային մրրիկները: Ղազախստանի միայն պիոներներն ու դպրոցականները տարեկան տնկում են միլիոնավոր ծառ ու թուփ, ստեղծում նոր պարտեզներ ու զբոսայգիներ:*

*Այն, ինչ առաջներում անում էր հեքիաթի բատիրը, այժմ անում են սովետական մարդիկ:*

էին, որ այդ վայրերում անպայման նավթ կա և երբեք չէին հուսահատվում: Նրանք չէին վախենում ոչ ամառվա շոգից և ոչ էլ ձմռան բքից: Եվ, վերջապես, 1961 թվականին խփեց նավթի առաջին շատրվանը: Քեռի Նիկոլայի ասելով այդ օրը մի այնպիսի ցնծություն էր տիրում թերակղզում, որ



պատկերացնել չի կարելի: Երկրաբաններն ուրախությունից նավթ էին քսում միմյանց դեմքերին...

Կարճ ժամանակից հետո սկսել են աշխատել երկրորդ և երրորդ նավթահորերը: Այժմ ամենքին է հայտնի, որ Մանգիշլակը շատ հարուստ է նավթով: 1970 թվականին նավթի հանույթը այստեղ կկազմի 15 միլիոն տոննա, այսինքն՝ գրեթե կհասնի Բաքվին:

Քեռի Նիկոլայը խոստացավ ինձ մի անգամ իր հետ տանել լեռները: Թեև այստեղի լեռնագագաթներին ոչ հավերժական ձյուն կա, ոչ էլ սառույց, բայց դարձյալ հետաքրքիր է: Անհամբեր սպասում եմ այդ օրվան:

Առայժմ: Քո հավատարիմ ընկեր՝ Սաբիթ

Վերջապես քեռի Նիկոլայը կատարեց իր խոստումը: Շաբաթ օրը ճաշելուց հետո ես, հենց այն է, ուզում էի վազել ծովափ, երբ մեր դռան առաջ կանգնեց նրա մեքենան: Մեքենայի մեջ կային քնապարկեր, վրան, զանազան գործիքներ, ուտելիք և մի տակառ ջուր:

Հետզհետե լեռներն ավելի ու ավելի էին մոտենում: Բայց սա ի՞նչ բան է. առջևում երևում է մի հինավուրց դղյակ, ասես սպիտակ մարմարից պատրաստված լինի, բազմաթիվ սյուներ, սրածայր կտուր, ատամնաձև պարիսպ...

Առաջ գնացինք և հանկարծ տեսանք ցանուցիր ընկած քարե գնդեր: Մի քանիսը իմ բարձրության էին, նույնիսկ ավելի մեծերը կային: «Էդ ի՞նչ հսկաներ են ապրել այստեղ, որ խաղացել են այդպիսի մեծ-մեծ գնդերով», — մտածեցի ես: Քարե գնդերի կողքին կային քարե սեղաններ, որոնց բարձրությունը հասնում էր մի քանի մետրի: Դու պատկերացնու՞մ ես, Անդրանիկ, ես քայլում էի այդ



Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

*Սոկոլովո-Սարբայի լեռնահարստացուցիչ կոմբինատը, որը սև մետալուրգիայի գիգանտներից է, կառուցվել է Սովետական Միության բոլոր հանրապետությունների երիտասարդության ուժերով, այդ թվում նաև Հայաստանի: Հարվածային այդ կառույցի շինարարությանը մասնակցում էին եղբայրական հանրապետությունների ավելի քան 600 գործարաններ:*

*Յոթնամյակի տարիներին Ղազախստանում ավելի շատ արդյունաբերական արտադրանք է թողարկվել, քան հանրապետության հիմնադրման բոլոր նախորդ տարիների ընթացքում:*

***1970*** *թ. Ղազախստանը պետք է արտադրի 21-22 միլիոն տոննա հացահատիկ, որը 8 անգամ ավելի շատ է, քան 1940 թվականին: Այժմ Ղազախստանում կա 30 միլիոն ոչխար և 7 միլիոն խոշոր եղջերավոր անասուն:*

ՄԵՐ ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐՆԵՐԸ 1966. ՄԵՐ ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐՆԵՐԸ 1966. ՄԵՐ ՄՐՑԱՆԱԿԱԿԻՐՆԵՐԸ 1966.

վիթխարի քարերի արանքով: Բայց ամենազարմանալին այն է, որ այդ քարակերտ դղյակը, սեղանները, գնդերը սարքել է քամին: Ուժեղ քամին գետնից քշում է ավազը, բերում լեռները, խփում քարերին, շաղափում, տաշում, հղկում, ասես՝ աներևույթ քարտաշ, որ դարեր շարունակ դադար չունի...

Բոլոր լեռներն ու շրջակա հարթավայրերը լերկ են՝ բուսականությունից բոլորովին զուրկ:

Քեռի Նիկոլայն ինձ ցույց տվեց հատուկ տեսակի քարեր, որոնք կոչվում են ֆոսֆորիտներ: Դրանք շատ ամուր քարեր են: Երբ մուրճով խփում ես, զրընգում են, բայց չեն ջարդվում: Այդ քարերից դաշտային պարարտանյութեր են պատրաստում: Դրանցից Մանգիշլակում շատ կան: Հա՛, մոռացա ասել, որ անապատային այս թերակղզուն ասում են գանձերի թերակղզի: Եվ դա անտեղի չէ: Երկրաբանները նավթից բացի, այստեղ հայտնաբերել են գազ, երկաթահանք, քարածուխ, ֆոսֆորիտներ, մարգանեց, զանազան աղեր...

Երբ շատ հեռացանք, զարմանալի բան տեսա՝ ծառ. իսկական կանաչ ծառ: Դա առաջին հաստաբուն ծառն էր, որ ես տեսա Մանգիշլակում: Քիչ հետո էլի ծառեր երևացին: Կարճ ասած՝ շուտով մենք մտանք մի գյուղ: Գյուղին այստեղ ասում են Դշլաղ: Ամենուրեք երևում էին ծառեր և կանաչ դաշտեր: Իսկ ծառերի վրա կային խնձոր, ծիրան և այլ մրգեր:

Իսկ ինչու՞ այստեղ բուսականություն կա: «Որովհետև այստեղ ջուր կա»,— նկատելով իմ հարցական հայացքը, պատասխանեց քեռի Նիկոլայը: Լեռներից բազմաթիվ աղբյուրներ են բխում, որոնց ջրով էլ ջրում են ծառերն ու դաշտերը:

Առաջներում, հիսուն գուցե և հարյուր տարի առաջ այստեղ շատ աղբյուրներ ու գյուղեր են եղել: Մինչև այսօր էլ տեղ-տեղ մնացել են հնագույն ջրատար ուղիների հետքերն ու ջրավազանների մնացորդները: Հիմա այստեղ գիտական արշավախումբ է աշխատում: Գիտնականներն ուսումնասիրում են հնության հուշարձանները, որոնց վրա զանազան գրեր ու նկարներ կան: Նրանք նաև ծառեր են տնկում ու խնամում, որպեսզի պարզեն, թե ինչպիսի ծառեր են այստեղ ավելի լավ աճում:

Վերջերս Մանգիշլակի երկրաբանները հայտնաբերեցին խմելու ջրի մեծ պաշարներ:

Այնպես որ, սիրելի Անդրանիկ, մեր Մանգիշլակը շուտով կդառնա կանաչ և ծաղկուն երկրամաս: Կկառուցվեն շատ քաղաքներ, գյուղեր, կտնկվեն այգիներ:

Առայժմ այսքանը:

Քո ՍԱՐԻԹ



«Անտեսանելի ստվերներ» վիպակի համար արձակագիր ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆԸ արժանացավ 1966 թ. լավագույն գրական ստեղծագործության մրցանակին:



«Պիոներ» ամսագրի 1966 թ. լավագույն նկարչական աշխատանքի մրցանակը շնորհվեց ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻՆ՝ «Անտեսանելի ստվերներ» վիպակի նկարազարդման համար:



Ջուրը դժվար էր հասնում պապի ընկուզենուն: Առուն պատռվում էր մեկ ճերմակ կեռասենու, մեկ ջեռ թթենու տակ: Բահով փակեցի պատռվածքները, ջրի փրփրած գլուխը տարա, տեղ հասցրի:

Հողը կարգին ծարավ էր, լավ ջուր էր խմում:

Արդեն սոված էի:

Արևը թոնրի պես կարմրել էր տանձենու ճյուղերի մեջ:

Սպասեցի, մինչև ջուրն ընկուզենու տակ լիճ կապեց, հետո պատռեց դրա պռունկը, հոսեց դեպի ձմռան խնձորենիների շարքը: Դրանք էլ ջրել էի, բայց մտածեցի՝ ինչու՞ կտրեմ, թող ջուրը հոսի:

Ու քայլերս ուղղեցի դեպի տուն:

Այգուց դուրս գալուն պես լսեցի Իվան ամու ձայնը.

— Ադա հե՜յ, ա՛յ խոխա, չե՞ս ամաչում:

Նրան տեսել էի իրենց այգու խոտի դեզի մոտ՝ եղանը ձեռքին: Մենակ էր, տնեցիները հանդ էին գնացել: Իսկույն հասկացա՝ ինձ է կանչում: Ջուրը վերևի առվից պետք է կտրեի, որ գնար դեպի Ներքևի այգիները: Հայրս միշտ այդպես էր անում, իսկ ես ծուլացա: Իվան ամին երևի դրա համար էր սովկալի բարկացած կանչում.

— Ադա՜, ա՛յ խոխա...

Ձևացրի, թե չեմ լսում:

Մեր այգուց դուրս եկող կածանը մինչև մասրենիների թփերն էր երևում: Մոտար թփերի ու դրանց կողքի մամուռի մեծ խալերով քարի ետև՝ պրծավ. քեզ ոչ-ոք այգուց չի տեսնի:

Այդ կտորն արագ քայլեցի:

Իսկ նա դեռ կանչում էր.

— Ադա՜, ա՛յ խոխա...

Վախեցա ետ դառնամ, ականջներս քաշի: Ջուրը հո մերը չէ՞ր, բոլորը պետք է օգտվեն: Բոլորի աչքը մեծ առվի վրա էր:

Տուն էի գնում հանցավորի պես: Իվան ամին կանչեց, ուշադրություն չդարձրի, մոտ չգնացի: Գյուղում ո՞վ կհամարձակվեր ինձ պես վարվել: Ոչ ոք: Ո՛չ մեծերը, ո՛չ էլ փոքրերը. Կոլտնտեսության Նախագահն էլ Նրան ենթարկվում էր:



*ԳԱՐԵԳԻՆ ՍԵՎՈՒՆՑ*

Գարնան ժողովը հիշեցի: Մենք պատուհանի տակից լսեցինք խոսողներին. Նախագահն ասաց՝ կարգադրություն կա մինչև ապրիլի հինգը ցանքսը վերջացնել: Վերին հանդում էլ: Իվան ամին բարկացավ. «Ադա, ձենդ կտրի: Վերին հանդի հողի մեջ մինչև ապրիլի տասնհինգը որդ ա լինում: Հիսուն տարի ա, էնտեղ վար եմ անում, գիտեմ: Էլ խի՞ եք հիմա սերմը հողը գցում. տվեք ագռավներին, թող ուտեն...»

Նախագահը Նրա հետ չվիճեց:

Հետո Իվան ամին հորս ասաց. «Նախագահը լավ տղա ա երևում, շուտ համաձայնեց. չհամաձայներ՝ սիլա կուտեր: Լավ պրծավ»:

Նախագահը լսեց Նրան, իսկ ես՝ ոչ:

Արդեն գյուղի մոտ էի, բայց դեռ մտածում էի՝ ետ չգնա՞մ ջուրը կապեմ մեծ առվի մեջ: Հորիցս էլ շատ էի վախենում: Ամառ-ձմեռ Նրա ձեռքերի կաշտուկները ճաքճքած էին լինում: Շատ աշխատելուց էր: Ուժեղ դաստակներ ուներ Նա: Երբ մեր էշի վրա բարկանում էր ու բոթում Նրան, էշը ճկըռում էր, քիչ էր մնում ընկնի: Մեկ-մեկ հոնքերի տակից ինձ խեթ Նայելիս սիրտս դող էր ընկնում: Իսկ եթե ապտակեր...

Հիմարություն էր իմ արածը՝ Իվան ամուն չլսելս, ետ չդառնալս:

Բայց արդեն ուշ էր. եղածը եղել էր:

# Գ Ա Ր Ո Ւ Ն

*Վ. ՄԵԽԱԿՅԱՆ*

Դուրս են եկել լուսափթիթ
Ծաղիկները նորաբողբոջ,
Շուրջը լի է երգ ու ժպիտ,
Գարնան տաղե՛ր, առվի խոխոջ։

Դաշտ է եկել տրակտորը,
Արտն է հերկում հռնդոցով,
Եվ թավշապատ սար ու ձորը
Հրդեհվել են կանաչ բոցով։

Եվ հրեղեն պայծառ արփին
Ջերմ ողջունում է բոլորին.
Ու մեր հստակ առվի ափին
Արթնանում է փոքրիկ լորին։

# ԱՆՄՈՌԱՆԱԼԻՆ

Նկ. ՌՈԲԵՐՏ ԱՅՎԱԶՅԱՆԻ

Մեր թոնրատնից ծուխ էր բարձրանում. մերոնք հաց էին թխում: Թարմ հացի հոտը մագնիսի պես ինձ քաշեց այնտեղ: Մայրս ուրախացավ.

Եկա՞ր. Գրիշ ջան, քեզ մատաղ... Բաղը ջրեցի՞ր:

Նրա ձեռքերը, գլուխը կապած թաշկինակն ալրոտ էին: Թշերը կարմրել էր: Դեպի երդիկը բարձրացող տաք հոսանքի հետևից ինձ նայում էր աչքերը կկոցած: Հետո մի պահ գլուխը ծռեց, այդ տաք հոսանքի կողքից նայեց ինձ, հարցրեց.

Խի՞ ես տխուր, բալա ջան, մատաղդ լինեմ:

Չուզեցի նրան պատմել եղածը, ասացի.

Չէ՛:

Մի լավաշ վերցրի, կոլոլեցի, ուզում էի ուտել, մայրս բարկացավ քրոջս վրա:

— Աղջի, բա չե՞ս տեսնում, ցամաք հաց է ուտում: Գնա ճաշը բեր, տաքացրու: Մի քիչ համբերիր, Գրիշ ջան, ոսպով շորվա եմ եփել...

Քույրս ճաշը բերեց, տաքացրեց, կերա: Հետո ուզում էի գնալ փողոց, մեկ էլ մեր բակից լսեցի Իվան ամու ձայնը.

Վարդա՜ն, այ Վարդա՜ն...

Հայրս նրան պատասխանեց երկրորդ հարկի պատշգամբից.

— Բարով ես եկել, Իվան ամի, բա խի՞ չես բարձրանում:

Չէ,— ասաց Իվան ամին,— եկ էստեղ, խոսք ունեմ ասելու:

Դժգոհություն կար նրա ձայնի մեջ ու գայրույթ:

— Բո՛,— նեղացավ հայրս,— բա մենք քեզ ի՞նչ վատություն ենք արել, էդքան տեղ եկել ես, չես ուզում բարձրանալ վերև: Բա էս էդպես կանեի՞: Ե՛կ, ե՛կ մի բաժակ արաղ խմենք:

Իմ սիրտը դող ընկավ: Իվան ամին ձեռնափայտին հենված, սրագագաթ գլխարկը գլխին՝ թշնամանքով էր նայում մեր տան կողմը:

Տեսավ հայրս շատ է պնդում, ցավալի հառաչեց, ապա առաջացավ:

Արդեն ելնում էր փայտե սանդուղքով:

— Թրը՛մփ, թրը՛մփ...

Կարծես ոտքերով գլխիս էր խփում: Գույնս երևի գցեցի: Մայրս նկատեց իմ երկյուղը, տագնապալի հարցրեց.

— Ի՞նչ ես արել, ա՛յ տղա:

Ես միայն ուսերս վեր քաշեցի: Վերևից նորից լսվեց Իվան ամու ձայնը:

— Էն անաբուռ լակոտին կանչիր էստեղ:

Արդեն թուքը չորացավ բերանումս:

Բա դա մարդ ա՞, ինչի՞ ես դրան հաց տալիս, պահում:

---

## ԱՌՎԱԿԻ ԿԱՆՉԸ

ՍԵՐՈ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆ

Ցուրտ ձմեռը հենց որ անցավ,
Հալվեց ձյունը մեր սարերի,
Բարակ առուն վաղ արթնացավ
Ու ձայն տվեց ծաղիկների.

— Դե, վե՛ր կացեք, իմ լավ քույրեր,
Ականջ դրեք գարնան երգին,
Ինչքա՜ն, ինչքա՜ն տխուր եմ ես,
Երբ դուք չկաք իմ եզերքին:

Մինչ ինձ վերև կանչելը, հայրս ցանկացավ իմանալ իմ կատարած հանցանքը.

— Ի՞նչ ա արել այդ շան լակոտը, ա՛յ ամի։

— Ես կարծում ես չեմ ասել՞։ Էլ ինչո՞ւ եմ եկել էստեղ։

Իմ չոքերն արդեն թուլացան։

Մայրս ինքն էր ուզում վերև գնալ, բայց լսեցի հորս բարկացկոտ ձայնը.

— Ադա, ա՛յ խոխա, եկ էստեղ։

Դեմքս արդեն այրվում էր։ Վերև բարձրացա, բայց չմոտեցա հորս։

Իվան ամին խիտ բեղերի վերևից չարությամբ նայեց ինձ.

— Ա՛յ անսարուռ,— ասաց նա,— բա էն բաղում մի չոփ չկար, մի ծեղ չկար, մի խորում խոտ չկա՞ր, որ հետդ բերես տուն։ Բա դու ո՞նց չամաչեցիր, վեր կացար, հարսանիքում պարողի պես ձեռքերդ խաղացնելով եկար տուն։ Նայում էի սրա հետևից, Վարդան, քիչ էր մնում սիրտս ճաքի։ Մի սրա բոյին նայիր։ Տղամարդը որ հանդ ա գնում, անտառ ա գնում, բաղ ա գնում, մի զատ չեղած տեղը քոլից զկեռ կքաղի, դանակով կամ ձեռքով մի խուրձ խոտ կքաղի կբերի, անսատւնի առաջ կդնի։ Ա՛յ թամբալ, բա ձեր բաղում մի բան չկա՞ր տուն բերելու։

Ես միայն ուսերս վեր քաշեցի։ Խոսել չէի կարող, լեզուս կապ էր ընկել։

Իվան ամու ձայնն ավելի խստացավ.

— Վախեցար ձեռքերդ ցավե՞ն, մեջքդ ծովի՞։ Դե հեռացի՛ր աչքիցս։ Սրանից հետո եթե տեսա ծուլություն ա արել, Վարդան, չնեղանաս ինձնից, ականջները տակով եմ պոկելու։

— Լսեցի՞ր,— իր հերթին սաստեց հայրս,— դե կորի՛ր։

Ես գոհ, որ այդպես հեշտ պրծա, համարյա փախա պատշգամբից։

Իսկ հայրս և Իվան ամին նստեցին մի-մի բաժակ հոնի օղի խմելու։

Անմոռանալի էր այդ օրն ինձ համար։



# ԶՈՌ ոսկեգույն ԿՈՃԱԿ

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ

*Տախտակամածի առաջ շարված թմբկահարները կոկոացրին թմբուկներն ու լռեցին։ Ժողովուրդը շունչը իրեն պահեց։ Մի երկար շորով պաշտոնյա բարձրացավ կանգնեց ամբիոնին, բաց արավ ձեռքի ոլորած թուղթն, սկսեց կարդալ.*

*«Մենք՝ Թոբիկ Առաջինս, կամոքն աստծո թագավոր ու տեր Թոբիլստան աշխարհի, սույնով ազդարարում ենք ի լուր ամենքի, որ երկու ոճրագործներ՝ Թոմմաս և Արտակ, չարամիտ դավ են նյութել մեր դեմ, կամենալով գնդակով, թույնով ու սուրով վերջ տալ մեր կյանքին ու տեր դառնալ մեր աշխարհին ու մեր գահին։ Սակայն նրանց սոսկ մտադրությունները չիրականացան. ժողովրդի միահամուռ օժանդակությամբ և ոստիկանության անխոնջ ջանքերով այդ չարամիտ ոճրագործները ձերբակալվեցին և այժմ ահա մեր հրամանով կախաղան պիտի հանվեն ի խրատ մեր հպատակների և ի սարսափ մյուս ավազակների, որ դեռ թաքնվում են։*

*Թոբիկ Առաջին, թագավոր ու տեր*
*Թոբիլստան աշխարհի»։*

*Թմբուկները երկա՜ր-երկա՜ր թնդացին, ժողովուրդը ալեկոծվեց ծովի պես ու նորից հանդարտվեց։ Դահիճն ուղղվեց տեղում, թևերը բշտեց ու գնաց դեպի դատապարտյալները։ Տախտակամածը ճռճռում էր նրա ոտքերի տակ, այնքան որ կերած, բտած էր այդ ավազակը։ Հայտնի բան է, մարդ պարապությունից ձանձրանում է ու ուրրում։ Այդ դահիճն էլ երեք ամիս է, ինչ գործ չու-*

*Սկիզբը՝ «Պիոներ» 1966 թ. №№ 9—12, 1967 թ. №№ 1, 2*

ներ։ Ու շատ էր տխրում, որ պարապ է։ Մրթմրթում էր դատավորների դեմ, որ գործ չեն տալիս իրեն։ Թոբիլ Թագավորը շատ էր սիրում իր դահճապետին ու չէր դիմանում, երբ նա պարապությունից սկսում էր տխրել։ Աշխատում էր մի բան հնարել, որ սիրտը բացվի։ Է, իսկ դահճի սիրտը ե՞րբ է բացվում։ Հայտնի բան է, երբ մարդ է կախում։ Դրա համար էլ Թոբիլ Թագավորը մեկ-մեկ անմեղ մարդ էր տալիս, որ հենց այդտեղ, բանտի բակում, կախի ու սիրտը տեղը գա, չտխրի։ Իսկ այդ երեք ամսվա ընթացքում ոնց էր եղել, ոնց չէր եղել, դահիճը մնացել էր անգործ ու քիչ մնաց պիտի մեռներ. նա թունդ լցված էր դատավորների ու մինչև անգամ Թոբիլ Թագավորի դեմ։ Ախր ո՞նց կարելի է դահճին գործազուրկ պահել…

Եվ այժմ, այդքան ծանր ամիսներից հետո, այդ ավազակը մի առանձին հաճույքով էր պատրաստվում կախելու երկու մեղավորներին։ Նրա սոխի գլուխը պսպղում էր արևի տակ, կարմիր շրթերը ասես վառվում էին, իսկ աչքերն այնպես էին փայլում, ոնց որ ոչխարի հոտի մեջ ընկած գայլի աչքեր։

Այդպես, տախտակները ճռճռացնելով այդ ավազակը գնում էր դեպի մեղավորները, մեկ էլ մի բան թրխկաց ուղիղ նրա պլպլան գագաթին… Պստիկ, կլոր մի բան, հազիվ սիսեռի չափ, բայց այդ ամդահան էնպես մի ռունգ հանեց, որ ժողովուրդը մի ականջը փակեց, բանի որ մյուս ձեռը վարունքին էր… Ի՞նչ եղավ, ի՞նչ պատահեց… Բան էլ չպատահեց։ Այդ ցուլին իսկի թուփը բար չէր անի, ուր մնաց սիսեռի հատիկը։ Էնքան որ ահը սիրտն էր, վախենում էր ժողովրդից, իմացավ, թե վերջն եկել է, ու ձեռը գլուխը գցեց։ Ափսոս, որ այդպես չեղավ։ Մի խոսքով, երբ խելքը տեղը եկավ, վրան-գլուխը դրատեց, թափ տվեց իրեն ու մոտեցավ մեղավոր հոգի Թովմասին։ Հենց այդ ժամանակ էլի մի սիսեռ թրխկաց ծոծրակին… Որ թրխկաց, այս ավազակը ձեռը ծոծրակին տարավ, արագ շուռ եկավ ժողովրդի կողմը ու էնպես մի բռռոց գցեց, պատմելու բան չի… Ժողովուրդը իսկույն մի ականջը փակեց (մեկելն ինչ ուզում է՝ լինի…) տներում ճլճլացող երեխեքը ձեները կտրեցին, սսկվեցին…

— Էդ ո՞վ…

Բայց նա չկարողացավ խոսքը վերջացնել՝ մի սիսեռ էլ՝ պը՛լթ, ճակատին… Ձեռքը ճակատին տարավ, մեկն էլ՝ պը՛լթ, ականջին… Ականջին տարավ, պը՛լթ, մյուս ականջին… քթի՛ն… աչքին… Գազազեց, գազան կտրեց. այնպես է ոռնում, մռնչում, ատամները ժնգժնգացնում, թուքը շաղ տալիս, որ էլ ասելու չի։ Մեծ-մեծ ձեռքերը կռանի պես բռունցք արած, օրորվելով եկավ ժողովրդի վրա։ Ժողովուրդը սարսափած ետ-ետ քաշվեց..

— Ու-ու-ու՜,— արջի պես ոռնաց նա, ամբողջ մարմնով ցնցվեց անզոր կատաղությունից։ Այդ բոպեին, թե որ ձեռքը տային, ինչքան Թոբիլըստանում մարդ կար, կկախեր ու օֆ չէր անի, այնքան որ իրենից դուրս էր եկել։

Մեկ էլ մի զարմանք բան կատարվեց. ամբողջ ժողովրդի աչքի առաջ այդ ավազակի շալվարի կոճակները, կը՛ռ-կը՛ռ-կը՛ռ-կը՛ռ, իրար հետևից ցած թափվեցին, ու իսկույն էլ, որտեղից-որտեղ, ուրախ հաչոցով տախտակամածին հայտնվեց մի շուն՝ Քոթոթը, որը տեղնուտեղը ատամներով կախ ընկավ



դահճի շալվարի փողքերից… Տեսնելու բան էր. շունը կախ է ընկել շալվարի տոտերից, իսկ այդ զզվելի դանդալոշը պտույտ-պտույտ է անում տեղում, որ շան ձեռից ազատվի։ Ժողովուրդը իրեն պահել չկարողացավ. մի ծիծաղ փրթավ, որ էլ ասելու չի։ Ամբողջ հրապարակը եռում էր, ուրախ քրքջում ու բղավում.

— Այ քեզ շու՜ն…

— Պստիկ է, համա ճստիկ է…

— Որտեղի՞ց էլ ժամանակին լույս ընկավ էդ կտրիճը…

— Ապրե՛ս, շնիկ…

Իսկապես էլ ապրեր Քոթոթը։ Շալվարի տոտերը բաց չէր թողնում, իսկ դահիճը գազազում էր ու գազազում։ Մեկ էլ, վերջապես, շալվարը ցած ընկավ, ոտքերը խճճվեցին շալվարի մեջ, ու այդ ամդահա դանդալոշը հասակով մեկ որ չըրխկաց տախտակամածին… Ոնց որ ռումբ տրաքեր։ Տախտակներից երկուսը ջարդվեցին, ու ավազակի նստուկը մտավ անցքի մեջ… Քոթոթն ուրախ հաչոցով ցած թռավ ու անհետացավ։ Հազիվ հանդարտվող ծիծաղը պայթեց նոր ուժով։ Գոռում էին, վեր-վեր թռչում, ուրախ քրքջում փորները բռնած։ Իսկ դահիճը ոչ մի կերպ չէր կարողանում ազատվել, դուրս գալ անցքից։ Ախր լավ կերել էր, բամակը հաստացրել ու հիմի ընկել էր

Գույ-Գույ մուկիկի վիճակի մեջ. պիտի լղարեր, որ դուրս գար։ Բայց դե լղարելու համար ժամանակ է հարկավոր, իսկ դահիճը շտապում էր։ Նա մի գլուխ ոտին-ձեռին էր անում, ժողովուրդն էլ՝ ծիծաղը կողն էր մտել, ծիծաղում էր ու հռհռում։ Մեկ էլ զորքի մեծ հրաման տվեց, ու զորքը կրակեց օդի մեջ։ Ժողովուրդը մեկեն ավլվեց. ձենը փորը գցեց. զորքից շատ էր վախենում։

Մինչդեռ այս բաները կկատարվեին, բոլորը մոռացել էին մեղավորներին։ Իսկ նրանք իրենց համար կանգնել էին կախաղանի տակ, ձեռները կապած հետևները, ու սպասում էին։ Մեկ էլ զգացին, որ մեկը իրենց ձեռքերն արձակում է... Ո՞վ պիտի լինի։ Աչքի պոչով հետևներն են նայում՝ մարդ-մուրդ չկա... Ի՞նչ բան է, նորից են նայում՝ էլի նույնը, ոչ մի շունչ-արարած։ «Օհո՜», մտածում են, էստեղ մի բան կա»։ Բայց ձեն-ձպտուն չեն հանում։ Արձակում է պրծնում, կամացուկ ասում է՝ «Սպասեք»։ Ինչի՞ չսպասեն որ, կսպասեն։ Բայց ո՞վ էր այդ ասողը։ «Ոնց որ Մհերի ձենը լիներ»,— մտածեց Արտակը։

— Ով որ է, ապրի, քաջն է,— փսփսաց Թովմասը։

— Այդպես է որ կա,— փսփսաց Արտակը։

— Իսկ այդ ախպեր ո՞վ էր կրակում,— փսփսաց Թովմասը։

— Մերոնք,— փսփսաց Արտակը։

— Ովքե՞ր են մերոնք,— փսփսաց Թովմասը։

— Դարբնի տղաներն ու իմ ընկերները,— փսփսաց Արտակը։— Երկուսը այ էն կտուրի տակ են, երկուսն էլ մեր դիմացի շենքի կտուրի տակ։ Ես իսկույն նկատեցի նրանց։ Ա՛յ, էլի փշտամները նշան բռնեցին։ Տեսնենք հիմի ո՞ւմ վրա են կրակում։

Լսվեց չորս թրխկոց՝ պը՛յթ, պը՛յթ, պը՛յթ, պը՛յթ, շարքի աջ թևում կանգնած չորս զինվորները ձեռները տարան ծոծրակներին, նույն պահին լսվեց մի ինչ-որ դրթոց, ու նրանց շալվարների կոճակները, կը՛տ-կը՛տ, կը՛տ-կը՛տ, իրար հետևից շաղ եկան գետնին։ Չգիտես որտեղից լույս ընկավ նույն շնիկը՝ Քոթոթը, և սկսեց արագ-արագ ցած քաշել զինվորների շալվարները...



Առաջին կրակոցին հաջորդեց երկրորդը՝ պը՛յթ, պը՛յթ, պը՛յթ, պը՛յթ, նույն դրթոցը, ապա կոճակների կոկոց՝ կը՛տ-կը՛տ-կը՛տ-կը՛տ ու շան հաչոցը՝ հա՛ֆ-հա՛ֆ-հա՛ֆ-հա՛ֆ... Ծած ընկան էլի չորս շալվար... Եվ այնուհետև լսվում էր միայն՝ պը՛յթ-պը՛յթ, պը՛յթ, դը՛րթ, կը՛տ-կը՛տ-կը՛տ-կը՛տ, հա՛ֆ-հա՛ֆ-հա՛ֆ-հա՛ֆ... ու շալվարները ցած էին ընկնում... Շարքերը խառնվեցին իրար, իրարանցում սկսվեց։ Զինվորները հրացանները նետում էին մի կողմ ու կռանում շալվարները վեր քաշելու, բայց այդ միջոցին ինչ-որ մարդիկ հրում էին նրանց, ու զինվորները շրմփում էին գետին... Ձախ թևի շարքերը երերացին, ապա շուռ եկան փախուստի։ Ժողովրդի միջից լսվեցին ցնծագին աղաղակներ, մեկը բղավեց.

— Տվե՜ք դրանց...

Զորքը խուճապի մատնվեց, խառնվեց իրար ու անկարգորեն փախավ դեպի պալատ։ Թովմասը բռունցքի մի ուժեղ հարված հասցրեց այդ րոպեին արդեն տեղից վեր բարձրացող դահճի գլխին և Արտակի հետ տախտակամածից թռավ ներքև։ Դահիճը անեծք-աղաղակով նորից խրվեց անցքի մեջ։

Զորքի հետևից քարեր է, որ թռչում էին, ժողովուրդը կրնկակոխ հետապնդում էր զինվորներին։ Վախենալով, որ գազազած ամբոխը զորքի հետ կներխուժի պալատ, Թորիլ Առաջինը հրամայեց դարպասները փակել։ Զորքը սեղմվեց պալատի պարիսպներին, փորձեց հարձակումը ետ մղել։ Լսվեցին անկարգ կրակոցներ, որոնց ժողովուրդը պատասխանեց քարերի տարափով ու կրակոցներով. զինվորների նետած զենքն արդեն գործի էր դրվում։ Թովմասը բոլոր հրացանավորներին արագ մի տեղ խմբեց ու կարգադրեց կրակ բանալ միայն իր հրամանով։ Մի քանի համազարկ, և շփոթված զորքն ստիպված եղավ զենքը ցած դնել։ Թովմասը կարգադրեց զինաթա-

մեկ զինվորներին և... շալվարների կոճակները կտրել, ուրիշ ոչինչ: Մեկ էլ որտեղից-որտեղ նրա առաջ ընկավ փոքրիկ մի տղա՝ մանյակն ուսին:

— Փոքրիկ, դու այստեղից հեռացիր,— խստությամբ ասաց Թովմասը:

— Այդ սա Մհերն է,— ուրախ վրա տվեց Արտակը: Թովմասը ուշադիր զննեց տղային ու ասաց.

— Ապրե՛ս:

Մհերը կարմրեց, բայց իսկույն ուշքի եկավ:

— Կոճակները ես... Միայն համարը տվեք:

— Եվ նա ցույց տվեց ձեռքի գործիքը, որ պրոպելլերի մանգաղի էր նման ու ածելու պես սուր էր:

— Դարբին քեռին է տվել,— հպարտությամբ ավելացրեց նա:— Ա՛յ, տե՛ս, վերևից էսպես քաշում եմ ներքև, ու կոճակները թափվում են գետին:

Թովմասը ձեռքը դրեց տղայի գլխին ու ժպտաց:

— Այժմ ես գիտեմ, թե էն աժդահա ավազակին ով տապալեց:

— Սա էլ Քոթոթն է:

— Օ՜, Քոթոթը նշանավոր շուն է... Իսկ այդ մանյակը որտեղի՞ց:

— Հովիվ պապիկը տվեց հիշատակի համար:

— Հիշատակի համար: Պարզ է: — Եվ Մհերի մազերը խառնելով, ավելացրեց.

— Իսկ հիմա անցիր գործի:

Թովմասը չորս հոգի դրեց Մհերի հետ ու պատվիրեց ոչ մի կոճակ չկորցնել:

Արտակը որոշեց պարզել իրեն տանջող հարցը. Թուրքիայում կոճակ կա՞, թե՞ չկա: Մարդիկ ինչո՞ւ են քայլում շարունակ վարտիքները բռնած:

— Թուրքիայում, իհարկե, կոճակ կա,— ասաց Թովմասը:— Իսկ ժողովուրդը մեռն է գալիս անկոճակ անդրավարտիքով, քանի որ այդպես է հրամայել Թուրք Առաջինը: Թագավորի հրամանով 14 տարեկանից բարձր տղամարդիկ իրավունք չունեն կոճակ ունենալու. մի ձեռքը շալվարին գցած մարդը ոչ իրեն վնաս կտա, ոչ էլ ուրիշին: Թուրք Առաջինն ու իր պալատականներն էլ կարող են երկյուղ չունենալ ժողովրդից ու հանգիստ քնել:

— Ա՛յ, հնարամտություն եմ ասել, հա՜,— զարմացավ Արտակը:— Խելոք թագավոր է այդ Թուրք Առաջինը:

— Խելոք... Այդ ամբողջ հնարամտությունը ծնվել է վախից: Թուրք Առաջինը չի վստահում ոչ ոքի, վախենում է ժողովրդից... Խելքն ու հնարամտությունը տարբեր բաներ են, տղա՛ս...

Քիչ հետո զինվորները զինաթափված էին, իսկ Մհերիկն ավարտում էր իր գործը: Նա անհավատալի վարպետության էր հասել կոճակներ կտրելու գործում: Մի անգամից՝ դը՛րթ, և կոճակները կարկուտով ցած էին թափվում. օգնականները չէին հասցնում հավաքել, այնքան որ այդ ամենը արագ էր կատարվում:

(Շարունակելի)

# ՔԱՐԱՅԾ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

Հոտն է գալիս ծլած հունդի,
Ժիր քարայծն է ժայռին պարում,
Նայում է նա խոր անդունդին
Եվ մորուքը թափահարում:
Նա հայացքով պարզ ու խորին
Լեռներն է չափում անահ
Եվ այնպես է նայում ձորին,
Թվում է, թե տերն է նրա:
Հեշտ չի ձմռանը կեր գտել,
Չի դժգոհել տխուր կյանքից,
Երկնքի տակ քուն է մտել
Ու փախել է միշտ փորձանքից:
Նա գոհ է, որ ժպտում է ջինջ
Հանդը՝ գարնան շորը հագին,
Դրա համար ժայռի գլխից
Ողջունում է արեգակին:




Նրան գարունն է հմայում,
Ուրախ-ուրախ մայում է նա:
Եվ այնպես է ձորին նայում,
Թվում է, թե տերն է նրա:

# ԱՐԵՎԻ ՇՈՂԸ

ԱՆՆԱ ՊԵՏՐՈՍՅԱՆ

Տղան ափով ծածկեց պատուհանից հատակին ընկած արևի շողի միայն մի փոքրիկ մասը: Նա ուզեց շողը պահել իր ափի մեջ և դրա համար արագ սեղմեց մատները: Արևի շողը դուրս սահեց նրա մատների արանքից և նորից տարածվեց հատակին՝ նույն տեղում: Տղան մի քանի անգամ փորձեց արևի շողը կտրել հատակից, բայց ոչինչ չստացվեց: Նա ուզում էր լաց լինել, բայց հիշեց, թե ինչպես մայրը նման դեպքերում ասում է. «Ի՜նչ է, աղջի՞կ ես»:

Տղան ծնկները գրկած նստեց հենց արևի շողի մեջ և սկսեց մտածել:

— Որտե՞ղ ես, Դավիթ,— հարցրեց մայրը, թեև շատ լավ գիտեր, թե նա որտեղ է:— Վեր կաց անմիջապես: Ի՞նչ սովորություն է թավալվել հատակին:

Տղան ուզեց ասել, որ ինքը բոլորովին էլ չի թավալվում, որ ինքը նստած է «երեխաների սենյակում», պատուհանից մի քիչ հեռու և ուզում է բռնել արևի շողը: Բայց ոչինչ էլ չասաց: Միայն աչքերը հեռացրեց մորից, մտածելով, որ նա այդպիսով իրեն չի տեսնի:

— Դու պարզապես փնթիի մեկն ես, հագել ես բոլորովին նոր տաբատ, նստել ես հատակին, կեղտոտում և չես մտածում, որ արևը մայր մտնելուց հետո կգան հյուրերը ու քեզ կեղտոտված կտեսնեն:

Տղան հանկարծ վախեցավ: Ոչ թե նրա համար, որ հյուրերը պետք է իր տաբատը կեղտոտված տեսնեն: Ո՛չ: Նա վախեցավ, որ արևը մայր է մտնելու ու իր հետ տանելու է շողը, իսկ ինքը այդ շողից դեռ չի հավաքել նույնիսկ մի կաթիլ: Տղան սենյակից դուրս թռավ:

— Տատի՛, տատի՛, որտե՞ղ է իմ տուփը:

— Մի՛ խանգարիր, գնա սենյակդ և խաղա խորանարդիկներով:

— Չեմ ուզում խորանարդիկներով խաղալ, ես իմ տուփն եմ ուզում:

— Գնա փնտրիր խաղալիքներիդ մեջ: Քո տուփը ի՞նչ գործ ունի խոհանոցում:

— Ես ուզում եմ, որ դու փնտրես:

— Տեսնում ես՝ ես զբաղված եմ:

Տատիկը իրոք որ զբաղված էր: Նա տեսակ-տեսակ կարկանդակներ էր թխել ու դեռ էլի թխում էր: Իսկ գազօջախի վրա խլթխլթալով, փլթփլթալով ու գոլորշի արձակելով ինչ-որ կերակուրներ էին եփվում: Իսկ տատիկը՝ մեկ դեպի գազօջախը, մեկ դեպի խոհանոցի սեղանը, մեկ էլ դեպի ջրի ծորակը: Ո՛չ, տատիկի վրա հույս դնել բոլորովին չի կարելի: Ափսոս: Իսկ ինքը սովորել էր, որ իր փոխարեն տատիկը գտնի կորցրած խաղալիքները. Նույնիսկ գուլպաներն ու... մի խոսքով, բոլորը, ինչ առհասարակ կարելի է կորցնել: Խոհանոց մտավ մայրիկը՝ ափսեների կույտով բեռնված:

— Հիմա էլ խոհանոցու՞մ ես: Գնա խաղա և ոտքի տակ մի՛ ընկնի: Նա խսկույն գտավ իր տուփը: Դա սկզբում դոմինոյի տուփ էր, բայց իր բոլոր դոմինոները կորցնելուց հետո տուփը մնաց բոլորովին դատարկ, մի տեսակ մենակ ու լքված: Եվ ահա այդ ժամանակ էր, որ փոքրիկ Դավիթը իր կերած բոլոր կոնֆետների թղթերը տարբեր-տարբեր գույների, սկսեց պահել այդ տուփի մեջ: Մայրիկն ասում էր, որ այդ թղթերը առհասարակ ոչ մեկին պետք չեն, տատիկն ասում էր, որ ավելորդ զբաղվածք են, իսկ հայրիկն ասում էր, որ թող չխանգարեն, տղան կոլեկցիոների ջիղ ունի: Դավիթը, իհարկե, չէր հասկանում, թե ինչ է նշանակում այդ «կոլեկցիոների ջիղը»: Բայց, դե, եթե հայրիկն ասում է, ուրեմն դա ինչ-որ շատ կարևոր բան է:

Դավիթը արագ-արագ տուփից հանեց կոնֆետի բոլոր թղթերը... Հիմա նա այդ տուփի մեջ կհավաքի արևի շողից մի քիչ ու... Նա ծածկեց պատու-

## ՄՈՐՍ ԺՊԻՏԸ

ՍԻՐՈՒՆ ՄԿՐՏՉՅԱՆ

Մորս ժպիտը երազ է ասես,
Անհուն ու անծայր,
Որ գիտի պատմել հեքիաթներ անթիվ.
Գիտի մեզ համար հորինել անվերջ
Երգ ու եղանակ...
Մորս ժպիտը մի անասելի
Մեղմություն ունի ու երգ անանուն,
Որի համար դեռ, գուցե չի հյուսվել
Ոչ մի եղանակ,
Ոչ մի հեքիաթում:



Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿՈՒԼԻԿՅԱՆԻ

հանից հատակին ընկած արևի շողը տուփի չափով և կափարիչը արագ հագցրեց վրան: Հիմա այն կարելի է նվիրել քրոջը, որի տասը տարին այսօր լրանում է: Եվ խոհանոցում տիրող այդ ամբողջ խառնաշփոթությունը հենց այդ պատճառով է:

Երեկոյան, արևը մայր մտնելուց հետո եկան հյուրերը: Եկան բոլոր մեծ քեռիներն ու մորաքույրերը, քրոջը նվերներ բերեցին. Է՛լ բյուրեղապակե գինու բաժակներ, էլ չինական մոխրաման, է՛լ պատառաքաղ ու դանակ, մի խոսքով, քույրը այդ բոլոր նվերներից այնպես տխրեց, որ քիչ էր մնում լաց լիներ: Ախր նրա ինչի՞ն էին պետք այդ գինու բաժակներն ու մնացած բաները: Քրոջ տխրությունը չանցավ նույնիսկ այն ժամանակ, երբ տատիկը ներս բերեց մեծ, շատ մեծ կարկանդակը՝ վրան կրեմով «տասը» գրված: Հետո մայրը նրանց ուղարկեց քնելու, սենյակի լույսն էլ հանգցրեց ու... Հենց այդ ժամանակ էլ Դավիթը քրոջ գրքերի պահարանից հանեց դոմինոյի տուփը, որի մեջ արևի շողն էր պահված և տվեց քրոջը:

— Վերցրու՛, ես սա նվիրում եմ քեզ:

— Ինչի՞ս է պետք դոմինոյի դատարկ տուփը:

— Դատարկ չէ... Ես քեզ համար արևի շող եմ հավաքել:

— Ի՞նչ, -հարցրեց քույրը:

— Արևի շող, որ դու գիշերները կարդաս: Ախր դու կարդալ ես ուզում, իսկ մայրիկը չի թողնում, ասում է անկողնում կարդալ չի կարելի ու լույսը հանգցնում է: Ես էլ բռնեցի արևի շողը: Դե, շուտ բաց արա:



Քույրը զգուշությամբ բացեց տուփի կափարիչը... Արևի շողը այնտեղ չէր: Մութ սենյակը, մութ էլ մնաց: Դավիթը կամաց հեկեկաց:

Քույրը նայեց-նայեց նրան ու գրկեց.

— Դե լա՛վ, լաց մի՛ լինի:

Հետո... հետո նրանք քնեցին: Քնեցին ու Դավիթը մի շատ զարմանալի երազ տեսավ: Նա տեսավ, թե ինչպես ինքը վազում էր մի շատ լուսավոր մարգագետնում, ու այնտեղ շատ-շատ ծաղիկներ կային, բոլոր գույների: Գետակ էլ կար: Ու արևը այնպե՜ս էր փայլում: Հետո արևը իջավ երկնքից ու եկավ կանգնեց ուղիղ Դավթի դիմաց: Մեծ, կլոր: Արևը ժպտաց նրան ու ասաց.

— Դու մի՛ տխրիր, փոքրիկս, որ ես իմ շողերը տարա ինձ հետ: Իմ շողիկն առանց ինձ կտխրեր: Իսկ ես չեմ ուզում, որ նա տխուր ապրի: Ախր դու էլ չես ուզո՞ւմ, ճի՞շտ է:

Հետո արևը ժպտաց իրեն ու դանդաղ բարձրացավ իր տեղը՝ երկինք:

Առավոտյան, երբ արևի շողիկը նորից պատուհանից ներս ընկավ, Դավիթը բացեց աչքերն ու ասաց.

— Բարի լույս, շողիկ:

Շողիկը պատասխանեց.

— Բարի լույս, Դավիթ.— ու ծիծաղեց: Ազնիվ խոսք, ծիծաղեց: Որովհետև այդ ծիծաղը քույրն էլ լսեց, մայրիկն էլ: Մայրիկը մտավ երեխաների սենյակ և բացականչեց.

— Ա՜յ քեզ արև:

Դավիթն ու քույրը նայեցին իրար և բարձր, ուրախ ծիծաղեցին: Միայն նրանք գիտեին, թե ինչու է այդ ծեր արևն այդքան շատ շող ուղարկել իրենց:

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԼՈՒՍԱԲԱՑ

*ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ*

*Ես սիրում եմ քեզ, բարի առավոտ,*
*Քո աչիկներն եմ սիրում արևոտ,*
*Դու ես բարևը տալիս առաջին,*
*Ժպիտ պարգևում ծաղկին, կանաչին:*
*Բացվում ես մանկան անհոգ ծիծաղով,*
*Բյուր երազներով, թիթեռի խաղով,*
*Քո փողկապագույն արևի բոցով,*
*Եվ թռչունների ժիր ծլվլոցով:*
*Ես քեզ սիրում եմ, առավոտ բարի,*
*Դու շաղոտ վարդ ես, ծաղիկ ես սարի,*
*Դու մայրիկի պես գուրգուրում, ժպտում*
*Ու երգ ես դառնում բոլորի սրտում:*
*Բացվի՛ր մայրական ջերմ գուրգուրանքով,*
*Ցողաթաց դեմքով, ծիծաղկոտ երգով,*
*Փռի՛ր թևերդ արևով ներկած,*
*Մեր պիոներական խնդու՛ն լուսաբաց:*



# Կրակի առասպելը

Արևի ճառագայթները տարածվել էին ողջ Հնդկական երկրի վրա, բայց չէին հասնում Խոր հովտին։ Այնտեղ խավարչոտ ձմեռն էր իշխում, և բոլոր կենդանիները, բացառությամբ Թախանագ արջի, արևի գթությունն էին աղերսում։

Մի գիշեր սոսկալի փոթորիկ սկսվեց, այնպիսի փոթորիկ, որ ծառեր էր ջարդում և արմատախիլ անում, ժայռեր էր փշրում և ավերում ամեն ինչ իր ճանապարհին։ Սակայն մի փոքրիկ կղզյակի վրա, Մեծ ջրերի մեջտեղում կանգնած էր միայնակ մի թզենի և անտարբեր երգում էր գարնան երգը՝ ծաղրելով մոլեգնող տարերքը։

Այս բանն ավելի կատաղեցրեց փոթորկին.

— Քեզ կպատժե՛մ,— գոռաց ամպրոպը և հարվածեց բաց թզենու ուղղակի սրտին։

Ա՜յ քեզ զարմանք, նույնիսկ այժմ նրա երգը չդադարեց։ Նրա սրտում վառվող կրակի երգը փոխանցեց լճի ալիքներին, որոնք իրենց հերթին փոխանցեցին ափերին և այնտեղից՝ դեպի հեռուները։

Արդեն փոթորիկը ուժասպառվում էր։ Համարյա արևածագ էր, փոթորիկը հեռացել էր հյուսիս, ավերածություն թողնելով իր հետևում։ Ամպրոպը նույնպես չքվել էր փոթորկի հետ միասին, անընդհատ ետ նայելով շանթահարված թզենուն։ Թզենին այլևս չէր երգում. նրա բունն ու ճյուղերը կրակով էին բռնկված և կապույտ ծխի մի սյուն էր բարձրանում դեպի երկինք։

Խոր հովտում բնակվող կենդանիները շուտով նկատեցին այդ ծուխը։

Անգղը թռավ վեր և աչքերը հառեց ծխի կողմը։

— Դրա՛ն է,— գոչեց նա,— կրակ կա կղզու վրա։

— Ի՞նչ բան է այդ կրակը, ինչի՞ է նման,— հարցրին մյուս կենդանիները։

— Մի կարմրադեղին բան է և անընդհատ երգում է, ահա ամենը, ինչ ես գիտեմ կրակի մասին,— պատասխանեց անգղը։

— Կրակը մեր բարեկամն է,— ասաց արջը,— եթե մենք կարողանանք կրակը բերել, նա մեզ տաք կպահի։ Ուզո՞ւմ եք ես գնամ բերեմ։

— Ո՛չ, ոչ,— ծիծաղեց բուն հեգնանքով։— Քո սրունքներն այնքան ծուռտիկ են, մի արջի բուն կքնեի մինչև գնաս և վերադառնաս։ Ես ինքս կգնամ։

Բուն թափահարեց թևերը և շարժվեց դեպի կղզի։

Պարզվեց, որ կրակ բերելը շատ ավելի դժվար էր, քան բուին թվում էր։ Նա վերցրեց շիկացած կրակի մի կտոր և ցավից գոռալով, վայր գցեց անմիջապես։

Նա խանձել էր իր փետուրները և շատ ուրախ կլիներ առանց մի նոր փորձանքի տուն վերադառնալու համար։ Երբ վերադարձավ, անմխիթար կերպով մի ճյուղի նստած՝ ջանում էր արդարացնել իրեն.

— Կրակը մեր բարեկամը չէ, նա նույնիսկ չուզեց ինձ հետ խոսել, քիչ էր մնում այրեր ինձ։

— Ես դիմացկուն մաշկ ունեմ,— պարծեցավ ակնոցավոր օձը,— գնամ տեսնեմ ինչ կարող եմ անել։

Բայց նա էլ իսկույն ետ ընկրկեց, ցավոտ այրվածքներ ստանալով։

— Կրակը արտակարգ ուժ ունի,— բացատրեց նա մյուսներին, երբ վերադարձավ ձեռնունայն,— ամբողջովին այրեց ինձ և կարմրեցրեց. ոչ ոք չի կարող դուրս բերել կղզուց։

— Դուք ինձ մոռացե՞լ եք, ես նույնպես արտակարգ ուժ ունեմ և, ո՞վ գիտի, գուցե ինձ հաջողվի կրակը այստեղ բերել, ես գիտեմ նրա հետ վարվելու ձևը,— ասաց արջը։

Թեև ոչ ոք չհավատաց, բայց ոչ ոք այս անգամ չփորձեց նրան հեգնել այլևս, բոլորին էլ հետաքրքիր էր, թե նա ինչպես կկատարի իր խոստումը։

Արջը չշտապեց գնալ։ Ամենից առաջ մի մեծ պարկ հարեց և խնամքով ծալելով այն կապեց իր մեջքին։ Հետո ճանապարհ ընկավ դեպի կղզին։

Նրա ճանապարհորդությունը երկար տևեց։ Արջի ծռմռված սրունքները դժվարությամբ էին հաղթահարում ճանապարհի խոչընդոտները, և երբ մտավ ջուրը, ալիքները նրան այս ու այն կողմ էին շպրտում. նա մտածում էր, որ իր կրած բեռը չքաշի իրեն ջրի հոսանքը։

Մի փոքր հանգստանալուց հետո արջը գործի անցավ վճռականությամբ։ Իր կապոցից հանելով մի երկար թել՝ կամաց-կամաց փաթաթեց ամենաշիկացած կտորին, պարելով արջի մի կախարդա-

կան պար, որպեսզի իր ոտնաձայներով կանխի թելի բռնկվելու վտանգը: Երբ վերջացրեց, Թանկագին ավարը դրեց կապոցի մեջ և վերադարձի ճամփան բռնեց:

Բոլոր կենդանիները նրան էին սպասում, նրանք շրջապատեցին սարդին անհամբեր հետաքրքրությամբ, տեսնելու, թե ինչ է արել նա: Սարդը թափ տվեց կրակը իր կապոցից և ասաց.

Բաց Թղենին մեզ մի այնպիսի բարեկամ է ուղարկել, որ ամենադաժան ցրտին էլ մեզ կտաքացնի, բայց մենք պետք է խնամենք նրան և կերակրենք, այլապես կմարի:

— Հուսով եմ, որ շատ չի ուտի,— ասաց արջամուկը, վախենալով, որ իր բաժնի կեսը կրակին կտան:

— Մի՛ անհանգստացիր, կրակը միայն չոր փայտ է ուտում, հանգստացրեց նրան սարդը:

— Օհո՜, բայց այստեղ փոթորիկ էր քիչ առաջ և ամբողջ փայտը թրջված է:

— Ես նրան կտամ իմ կեղևը, որը թաց էլ է վառվում,— ասաց սոճին՝ իրենից թողնելով մի մեծ կտոր ձյութոտ կեղև:

Սկյուռը պոկեց մի շերտ և այն մոտեցրեց կրակին: Բարձրացավ դեղնա-կարմիր ծուխ, սկսեց բոցավառվել և մեկ անգամ ընդմիշտ ազատել նրանց դաժան ցրտից:

Այն ժամանակվանից կրակը երբեք չի հանգել: Ցերեկները սկյուռը պահում էր կրակը, իսկ երեկոյան բոլորը հավաքվում էին նրա շուրջը և երգում մի երգ, որին, եթե ուշադրությամբ ականջ դնեք, կլսենք, որ մասնակցում էր նաև կրակը.

Երբ որ կրակն է բոցկլտում պայծառ,
Մենք սիրով նրա շուրջն ենք հավաքվում,
Լսում տերևների երգը անդադար՝
Մեր բարեկամն է կրակը կյանքում:

# ԿՈՐԱԾ ԵՐԵԽԱՆԵՐԸ

Լայնարձակ հովտում ազատ, անկաշկանդ արածում էր գյուղի նախիրը: Անասունները միայն խուսափում էին գետափին գտնվող միայնակ խրճիթից, կարծես թե այնտեղ ոգիներ էին բնակվում:

Յոթ եղբայրներ էին ապրում այդ խրճիթում՝ աղքատ, ինչպես դաշտային մկներ: Նրանց հայրը հազվագյուտ դեպքերում էր հաջողեցնում որսից տուն վերադառնալ լիքը ձեռքով, և տղաները ըստիպված ուտելու փոխարեն երգ ու պարով էին սնվում:

Ոչ էլ հագնելու շոր ունեին եղբայրները, մինչդեռ հարևան գյուղի տղաները ամեն գարնան հորթի կաշվից կարված նոր զգեստներ էին հագնում: Իսկ եղբայրներն աշխատում էին աչքից հեռու մնալ, որ ոչ ոք չտեսնի ու չծաղրի իրենց մերկությունը:

Եղբայրները հանդգնում էին դուրս ելնել իրենց խրճիթից միայն գիշերները, երբ սկսվում էր նրանց խաղի ժամը: Խաղում էին, որպեսզի մոռանան դատարկ ստամոքսները: Գաղտագողի դուրս գալով խրճիթից, ընտրում էին լավ պատսպարված տեղ, ուր գետինը մերկ էր ու կոշտ և սովորաբար նախքան խաղն սկսելը կրակ էին վառում, որ հաղթահարեն սառնամանիքը:

Ամբողջ օրը սոված յոլա գնալով, գիշերները աշխատում էին խնջույք անել, որն, իհարկե, խաբուսիկ էր լինում՝ առանց ուտելիքի: Կռացած կրակի վրա, երևակայությունը կախարդում էր նրանց՝ տապակած հորթի գայթակղիչ պատկերով: Հետո պարում էին կրակի շուրջը, մինչև մոտենում էր լուսաբացը և նրանց ուղարկում քնելու:

Անցնում էր գիշերը գիշերվա հետևից, բայց երեխաները մնում էին աղքատ ու սոված, իսկ Սուրբ Հոգին երբեք էլ չէր անհանգստանում նրանց համար, առանց այն էլ նա շատ հոգսեր ուներ. աղքատ հնդիկներն անթիվ էին, անհամար:

Դեղին Հորթի ամսվա վերջին երեխաները այնքան հյուծվել, ուժասպառ էին եղել, որ այլևս պարել չէին ցանկանում:

— Վե՛ր կացեք, արթնացե՛ք,— թախանձում էր մեծ եղբայրը մնացած վեցին,— եկեք մի խորհուրդի կրակ վառենք, գուցե փրկության միջոց գտնենք:

Չգիտեմ, թե քանի լույս էր վառվում հնդկական երկրում այդ գիշեր, բայց մեկը վառվում էր մարգագետնի եզրին, և յոթ եղբայրները նստած էին նրա շուրջը: Անցնում էր ժամանակը, իսկ նրանք սպասում էին լուռ ու մունջ: Վերջապես ամենափոքրը սկսեց խոսել խոր թախիծով.

— Աշխարհը շատ վատ տեղ է. գուցե ավելի լավ կլինի, եթե մենք հեռանանք նրանից, եկեք աղբյուր դառնանք կամ, օրինակ, հող: Այդ դեպքում մենք խաղաղ կլինենք և ոչնչի կարիք չենք զգա:

— Ո՛չ, հողը մեռած է, ավելի լավ է ժայռ դառնանք,— առաջարկեց երկրորդ եղբայրը:

— Ժայռերը կարող են խորտակվել, — չհամաձայնեց երրորդը, — եկեք հսկա ծառ դառնանք։

Իսկ չորրորդ եղբայրն այլ կարծիք ուներ.

— Կայծակը մեզ կշանթահարի. լավ է ջուր դառնանք և ապահով լինենք ամեն տեսակի վտանգից։

— Իսկ արև՞ը. նա կարող է չորացնել բոլոր ջըրերն ու գետերը։ Լավ կլինի, եթե գիշեր դառնանք, գիշերը մեզ միշտ ապաստան է եղել։

Նրանց դուր եկավ վերջին միտքը և համարյա համաձայնում էին, երբ վեցերորդ եղբայրն ասաց.

— Ո՛չ էլ այդ է ամենահարմարը. գիշերը միշտ փոխվում է ցերեկվա. ես կցանկանայի ցերեկ դառնալ, քան գիշեր։

Եղբայրները լռեցին մի պահ, հետո ամենամեծն ասաց.

— Մեզ հայտնի է, որ ցերեկն էլ մշտական չէ. միայն լուրթ երկինքն է հավերժական, բայց մենք նրան փոխարինել չենք կարող, քանի որ մեկ երկինքը բավական է հնդիկներին, բայց այնտեղ կան բազմաթիվ գեղեցիկ աստղեր. կարծում եմ, նրանք ուրախությամբ կընդունեն և տեղ կհատկացնեն մեզ իրենց կենտրոնում։

Տղաները ուրախացան խելոք խորհրդի համար և համաձայնեցին։

Մնացած փայտերն էլ գցեցին կրակի մեջ, որը մեծացավ, պայծառացավ և լուսավորեց ամբողջ բացատը։

Եղբայրներն էլ հենց այդ էին ուզում. նրանք ոտքի ելան, ձեռք-ձեռքի տվին և հանդարտ սկսեցին պարել։

Յուրաքանչյուր քայլ փոխելիս կարծես չքանում էր նրանց հոգնածությունը, ոտքերը սլանում էին ավելի ու ավելի արագ։ Արդեն գետնին չէին դիպչում, ձեռք-ձեռքի տված, մեկ շրջան կազմած՝ բարձրանում էին վեր։ Ներքևում, հեռվից-հեռու, դեռ կրակն էր հուրհրատում, իսկ նրանք սլանում էին դեպի աստղերը։

Հնդկական երկրի վրա առատ են աստղային մոլորակները։

Այժմ, երբ գիշերային երկինքը շրջապատեց նրանց իր հրաշքներով, յոթ եղբայրները պարը դադարեցրին և իրենց շուրջը նայեցին ապշած։ Նրանք երկնքում տեսան իրենց յոթ տաղավարները, որոնք կարծես հենց եղբայրներին էին սպասում։ Նրանք վազեցին և տեղավորվեցին ամեն մեկը մի վրանի տակ։

Ներսում զարմանահրաշ բարիքներ էին սպասում նրանց։ Տաղավարի պատերին, հատակին և ամենուրեք թափված էին անթիվ գեղեցիկ իրեր։ Յոթ եղբայրները կանգնել էին և շունչները պահած հիանում էին այդ մոգական հարստություններով, որոնք իրենց համար էին։ Այնտեղ կային գեղեցիկ զարդանկարներով թանկարժեք հագուստներ, առաջնորդական փայլուն գլխարկներ, նուրբ ձևավորված հնդկական կոշիկներ և լիառատ համեղ ուտելիքներ։

Տղաներից յուրաքանչյուրը հագավ նոր զգեստներ և շտապեց ցույց տալ մյուս եղբայրներին։

Ա՛յ քեզ հրաշք, նրանց հագուստները ճիշտ նույնն էին, և բոլորն էլ փայլում էին շլացուցիչ ոսկեգույն լույսով։ Եղբայրները զարմացած իրար էին նայում առանց հասկանալու, թե ինչ է պատահել իրենց։ Վերջապես մեծ եղբայրը գտավ անխոս տրված հարցի պատասխանը.

— Եղբայրնե՛ր, կատարվել է մեր ցանկությունը՝ կապույտ երկինքը մեզ բերել է իր մոտ և աստղեր դարձրել։

Եվ իսկապես էլ այդպես էր։ Այն օրից սկսած, երբ աշունը գալիս է և վայրի ցուլը դարչնագույն է դառնում, Հնդկական երկրի բոլոր երեխաները նայում են կապույտ երկնքին և աստղերի մեջ փնտրում են կորած եղբայրներին։ Նրանք հաջորդում են իրար աստիճանաբար. մեծ եղբոր վրանը գտնվում է բոլորից վեր, և նրա ճառագայթները կորչում են անսահմանության մեջ։

*Անգլերենից թարգմ.՝ Լ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ*

*Նկ. ԱՐՄԻՆԵ ԿԱԼԵՆՑԻ*





№ 1 ՄԱՐՏ 1967

## ԲՈԼՈՐԸ ԿՈՄԻՏԱՍ ԵՆ ԵՐԳՈՒՄ

*Վերջերս մեր ջոկատը կազմակերպեց հետաքրքիր մի հավաքույթ նվիրված Կոմիտասին: Մենք երգեցինք Կոմիտասի երգերից, արտասանեցինք Պարույր Սևակի «Անլռելի զանգակատուն» պոեմից հատվածներ: Վերջում մեր ջոկատի ջոկատավար Ավետիկ Դավլաթյանը պատմեց Կոմիտասի կյանքի և գործունեության մասին:*

ԱՇՈՏ ԳՐԻԳՈՐՅԱՆ

*Եղեգնաձորի № 2 միջն. դպրոցի 6-րդ դասարանի աշակերտ*

## ԽՈՊԱՆԸ ՆԱՀԱՆՋՈՒՄ Է

*Երկու տարի առաջ Սիսիանի շրջանի Բռնակոթ գյուղի դպրոցականները դպրոցի ուսումնա-փորձնական հողամասում տնկարան հիմնեցին:*

*Այս տարի արդեն մեկից-երկու մետր բարձրության շիվերը ուրախացնում էին երեխաներին: Առաջին հաջողությունից ոգևորված, նրանք դուրս եկան գյուղի դիմացի անմշակ սարալանջը՝ տնկարան հիմնելու:*

*Ճիշտ է, ջրի պակասից տեղ-տեղ ծառերը չորացան, բայց և շատերը աճեցին:*

*Այժմ Բռնակոթի միջնակարգ դպրոցում մրցում են բոլորը. ամեն մի դասարան ցանկանում է իր տնկարանն ունենալ:*

ԽԱԺԱԿ ՊՈՂՈՍՅԱՆ

*Սիսիանի շրջան, գյուղ Բռնակոթ*

## ՆՈՐԱԿԱՌՈՒՅՑ ԹԱՂԱՄԱՍԸ

Մի քանի տարի առաջ, կենդանաբանական այգի գնում էինք նեղ, անհարթ մի ճանապարհով: Այժմ այդ խարխուլ ճանապարհի փոխարեն ձգվում է Մյասնիկյանի անվան ընդարձակ ու գեղեցիկ պողոտան, որտեղ վեր է բարձրանում քաղաքի մի նոր թաղամաս: Կանցնեն տարիներ և մեր թաղամասը՝ Նորքի կանգվածը, կածի, կդառնա քաղաքի ամենագեղեցիկ անկյուններից մեկը: Իսկ այն ավելի բարետես դարձնելու համար մենք՝ դպրոցականներս էլ մեր պարտքն ունենք: Եկեք ծառատնկենք և կանաչապատենք մեր բակերն ու փողոցները, դպրոցի շրջապատը:

ԳՈՀԱՐ ՄԱՐԳԱՐՅԱՆ

*Երևան, 106-րդ դպրոցի 8-րդ դասարանի աշակերտուհի*

*Արմենն ու Արամը եղբայրներ են: Ճիշտ է, Արմենը անցած տարի Երևանի պիոներների պալատի շախմատի դպրոցի մրցումներում առաջին տեղը գրավեց, բայց տանը դժվարությամբ է մրցում իր փոքր եղբոր՝ 5 տարեկան Արամի հետ: Արամը միևնույն ժամանակ հրաշալի նկարում է, ապա կարդում է հայերեն, ռուսերեն և գերմաներեն:*



## ՄԵՐ ՆՎԱԳԱԽՈՒՄԲԸ

Եթե երբևէ-առավոտյան դուք լինեք Ալավերդու Սուրեն Սպանդարյանի անվան միջնակարգ դպրոցում, ռադիոյով կլսեք երաժշտություն, որին հաջորդում է հաղորդավարի ձայնը. «Ելույթ է ունենում դպրոցի էստրադային նվագախումբը»:

Ընդամենը մեկ տարի առաջ էր: Դպրոցի ռուսաց լեզվի ու գրականության ուսուցիչ Միշա Սարգսյանի նախաձեռնությամբ կազմակերպվեց էստրադային նվագախումբ:

Անցան օրեր... Եվ դպրոցի տրադիցիոն օրը առաջին անգամ նրանք ելույթ ունեցան:

Պատանի երաժիշտներին այսօր արդեն տարբեր տեղերից իրենց մոտ ելույթի են հրավիրում: Պատանիները չբավարարվեցին միայն ելույթներով: Մի օր էլ դպրոցի երրորդ հարկի սրահում եռուզեռ սկսվեց: Նվագախմբի անդամները երաժշտական գործիքների փոխարեն վերցրել էին մուրճ, մեխ ու սղոց: Այսպես ծնվեց



դպրոցի «Արվեստասերի անկյունը»:

ԼԻԴԱ ՄԵԼԻՔՅԱՆ

*Ալավերդու Սուրեն Սպանդարյանի անվան միջնակարգ դպրոցի ավագ ջոկատավար*

## ՀԱՐԳԵԼԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

*Անցյալ տարի ամառը, մրցումների ժամանակ, ես ծանոթացա մի աղջկա հետ: Մի քանի օրում մենք շատ մտերմացանք: Բայց ես նույնիսկ նրա հասցեն չիմացա: Հետո ինձ ասացին, որ նա սովորում է Երևանում: Նրա անունը Էլեոնորա է, ազգանունը Ղուկասյան:*

*Խնդրում եմ ամսագրի միջոցով օգնեք ինձ՝ գտնելու իմ ընկերուհուն:*

ՌԻՄԱ ՍԻՄՈՆՅԱՆ

*Արտաշատի շրջան, Մխչյանի միջնակարգ դպրոցի աշակերտ*

## ՄՐՑՈՂ ՋՈԿԱՏՆԵՐԸ

Մեր ջոկատը մրցում է 5-րդ ջոկատի հետ, թե որ ջոկատը առանց երկտարեցիների կփոխադրվի հաջորդ դասարան:

ԳԱԼՅԱ ՂԱՐԻԲՅԱՆ

*Ախալքալաքի շրջանի Ջաքի միջն. դպրոցի 6-րդ դաս.*



Լույս է տեսնում 1925 թվականից



ՊԻՈՆԵՐ 3 ՄԱՐՏ 1967

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ



**„Пионер"** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—68—16, 2—59—06։*

*ՎՖ 06341։ Պատվեր՝ 182։ Տպաքանակ՝ 47.448։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 10/III 1967 թ.։ ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան փ. № 91։*
Գինը՝ 10 կ.




## «ՖԻԶԻԿԱՆ ԵՎ ԵՐԱԺՇՏՈՒԹՅՈՒՆԸ»

Ֆիզիկայի կաբինետում հավաքվել էր հնարամիտների ջոկատը։ Բոլորը հետաքրքրությամբ ու լուռ լսում էին Գագիկին, իսկ սա ոգևորված պատմում էր.

— Մի անգամ ֆրակոնների կրկեսում կուլիսների հետևից նժույգի վրա հրապարակ է գալիս նրբիրան, գեղեցիկ մի հեծյալ։ Նա ձիու վրայից թռչում է վեր, կատվի պես մագլցում երկար լարի վրա և սկսում է պարել։ Իսկ ներկայացումից հետո հեծյալը նստում է լաբորատորիայում՝ գրքերով և ֆիզիկական սարքերով շրջապատված։ Նա մոտենում է ճախարակին ու ճոպանն ամուր քաշում։ Հարվածը ճոպանի վրա առաջացնում է բազմաթիվ տատանումներ, որոնք ֆիզիկայում կոչվում են «կանգնած ալիքներ»։ Լարի յուրաքանչյուր մասը այդ հարվածից մի առանձին հնչյուն է առաջացնում, իսկ ընդհանուր լարի անդադրում, կայծակնային թրթռումները լսելի ձայն են արձակում, ընդ որում ոչ թե մեկ, այլ միանգամից բազմաթիվ ձայներանգներ։ Այ, հենց դրանումն էլ թաքնված է ջութակի և կիթառի գեղեցիկ հնչելու գաղտնիքը։

— Այդ դերասանը ես գիտեմ ով էր, ուզո՞ւմ ես ասեմ,— Գագիկին հանկարծ ընդհատեց Անահիտը։— Նա հռչակավոր գիտնական Թոմաս Յունգն էր։ Գիտե՞ք, Յունգը ոչ միայն կրկեսի դերասան էր, մեծ ֆիզիկոս, այլև լավ նկարում էր։

— Յունգը նաև հիանալի երաժիշտ էր,— վերջին նստարանից բարձրանալով և դեպի գրատախտակը մոտենալով շարունակեց Վահանը։— Նա նվագում էր այն ժամանակ հայտնի համարյա բոլոր գործիքները։ Ի միջի այլոց, դուք գիտե՞ք, թե որտեղ և ինչպես են առաջացել երաժշտական առանձին գործիքները։

— Իսկ դու գիտե՞ս, որտեղի՞ց, դե պատմիր, պատմի՛ր,— այս ու այն կողմից ձայնեցին երեխաները։ Ամբողջ դասարանը աշխուժացավ։

— Դե լա՛վ, լա՛վ, մի՛ աղմկեք, ես կպատմեմ: Երաժշտությունը հնչել է դեռևս դարեր առաջ: Այն օգնել է մարդուն աշխատանքում, եղել է ուրախության միջոց, թեթևացրել է վիշտը: Ըստ հինավուրց հավատալիքների՝ երաժշտությունը ոչ միայն հաճույք էր, այլև բնության երևույթների պատճառ: Իբր երաժշտության տա՛ք արևը ցրել է մութ ամպերը, արտերը ողողել անձրևով: Ավստրալիայում կռապաշտների երթի ժամանակ առջևից միշտ գնում է կախարդը: Նա ձեռքին բռնում է կրոնական չուրինգան. դա երկար, փայտի վրա ամրացված պարսատիկի նման մի բան է: Կախարդը պտտում է չուրինգան, և շուրջը լցվում է ճղճղան վայնասունով, թըշշոցով և սուլոցով: Ինչպիսի երաժշտական գործիքներ ասես, որ չեն հնարել մարդիկ, և որքա՜ն զանազան են նրանք տարբեր ժողովուրդների մոտ, տարբեր ժամանակներում: Այ, օրինակ... Բայց այդ գրքում այնքան պատմելու բան կա, ես ո՞րը պատմեմ:




— Այդ ո՞ր գիրքն է,— հարցրեց մտազբաղ Գայանեն:

— Վերջերս մի շատ հետաքրքիր գիրք լույս տեսավ՝ Գլեբ Անֆիլովի «Ֆիզիկան և երաժշտությունը»: Կարդացեք այդ գիրքը, որի էջերից հետաքրքիր շատ նորություններ կիմանաք նաև ձայնագրության հրաշքների, ձայնի վերլուծության, շոկոլադից պատրաստված ձայնապնակների, գծագրական հնչյունի, բծերով սիմֆոնիայի, տոնայնության և այլ հրաշքների մասին:

ԿԱՏՅԱ ՍԱՐՎԱԶՅԱՆ

## «ԳԱՂՏՆԻՔԻ ՄՅՈՒՍ ԿՈՂՄՈՒՄ»

Գագիկի դասընկերուհին՝ Նազիկը, մի գիշերում ասես գիտնական էր դարձել: Նա առավոտյան, դպրոցի ճամփին այնքան չլսված-չտեսնված բաներ պատմեց, որ Գագիկի աչքերը չռվել էին զարմանքից ու բերանը բաց էր մնացել:

— Դեռ մի՛ շտապիր զարմանալ,— շարունակում էր պատմել Նազիկը.— դու գիտե՞ս, թե ինչ է սուրդոկամերան:

— Ոչ. դա ի՞նչ բան է:

— Դա բացարձակ լռության աշխարհ է. այնտեղ թեկուզ մի տարի մնաս, ոչ մի ձայն-ծպտուն չես լսի: Դա մի խցիկ է, որտեղ վարժություններ են անում ապագա տիեզերագնացները: Իսկ գիտե՞ս ինչ է պատահել ամերիկյան չորս տիեզերագնացների, երբ նրանք սուրդոկամերայում կատարում էին նախնական վարժություններ: Քսան-երեսուն ժամ բացարձակ լռության մեջ միայնակ մնալուց հետո, նրանցից մեկին թվացել է, թե իր խցիկը արագորեն պտտվում է, իսկ իրականում այն բոլորովին անշարժ է եղել: Մյուս փորձարկվողը ռադիոյի միջոցով հաղորդել է, թե խցիկի ներսում եղած հեռուստացույցը աղավաղված պատկերներ է ցույց տալիս, այնինչ հեռուստացույցը բոլորովին սարքին վիճակում է եղել:

Երրորդ խցիկի օդաչուին թվացել է, թե հեռուստացույցը սոսկալի ջերմություն է արձակում, իսկ չորրորդ օդաչուն հայտնել է, թե հեռուստացույցի տախտակը հալվում է և կաթիլ-կաթիլ ցած թափվում: Գիտե՞ս ինչու է այդպես լինում, արտասովոր պայմաններում կամ ներվային ցնցումներ ունենալիս՝ մարդիկ կարող են տեսնել կամ լսել այնպիսի բաներ, որ իրականում չկան:

— Այդ ես էլ գիտեմ,— ասաց Գագիկը,— ի՞նչ մեծ բան է:

— Հա՜, ինչպե՞ս չէ... բացատրելուց հետո ամեն գաղտնիք պարզ է դառնում, բայց դեռ որքա՜ն անիմանալի գաղտնիքներ կան կյանքում, որոնք նման են սև վարագույրի... Ու որքա՜ն գիտնականներ գլուխ են կոտրում, որպեսզի իմանան, թե ի՞նչ հանելուկ է թաքնված այդ վարագույրի մյուս կողմում: Իսկ վարդապետներն ու տերտերները չեն էլ մտածում բնության երևույթները բացատրել, պարզել նրանց առաջացման պատճառները:

«Ամեն ինչ կատարվում է աստծու կամքով»,— ահա նրանց միակ պատասխանը:

Մինչդեռ կյանքում ամեն երևույթ ունի իր պատճառը, ինքն իրեն ոչինչ չի կատարվում:

Ես դեռ երեկ այնքա՜ն բաներ չգիտեի, իսկ այսօր գիտեմ: Այ, օրինակ՝ դու գիտե՞ս, թե ինչ է նշանակում պատահական երևույթ, երևույթների պատճառական կապ:




— Չէ, չգիտեմ:

— Ուզո՞ւմ ես բացատրեմ... բայց արդեն հասանք դպրոց և զանգի ժամանակն է... Ա՛յ, ես քեզ կտամ մի գիրք, որի հեղինակն է Վիկտոր Կոմարովը: Գրքի վերնագիրն է *«Գաղտնիքի մյուս կողմում»*: Կկարդաս և ամեն ինչ կիմանաս:

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

77806

# ԻՄ ՃՈՒՏԻԿՆԵՐ

Խոսք՝ ԱՇՈՏ ՄԿՐՏՉՅԱՆԻ
Երաժշտությունը՝ ԱԼԵՔՍԱՆԴՐ ԿՈՒՐՈՅԱՆԻ

Allegro ma non troppo

Ծիք-ծիք, ծիք-ծիք իմ ճուտիկներ,
Լույսը բացվեց, ելեք դուրս վեր.
Մայրիկի հետ քուջուջ արեք
Ու ձեզ համար հատիկ ճարեք:

Թևիկներով ծափ-ծափեցեք,
Ծիվ-ծիվ ասեք, ծլվլացեք,
Զգույշ կացեք չար փիսիկից,
Բազե, ուրուր ու ագռավից:

Ծիք-ծիք, ծիք-ծիք, իմ ճուտիկներ,

Դե շուտ, դե շուտ, իմ փափլիկներ,
Եկեք բակը, որ ձեզ մոտ գամ
Ու ձեզ անուշ, առատ կեր տամ:

Առատ կեր տամ, որ մեծանաք,
Փափլիկ, սիրուն հավեր դառնաք,
Հավեր դառնաք ու ձու ածեք,
Խանութ ու տուն ձվով լցնեք:

Դե շուտ, դե շուտ, իմ ճուտիկներ,
Մի՛ ուշացեք, իմ փոքրիկներ: